Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք



# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

7
ՀՈՒԼԻՍ
1987 թ.

**ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ**

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԱՄԻՍԸ ՄԵԿ ԱՆԳԱՄ ՀԱՅԵՐԵՆ ԵՎ ՌՈՒՍԵՐԵՆ

## Բովանդակություն



ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ

ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս.
(գլխավոր խմբագիր)
ԱՍԱՏՐՅԱՆ Գ. Ե.
ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ Լ. Բ.
(գլխավոր խմբագրի
տեղակալ)
ԽՈՋԱԲԵԿՅԱՆ Վ. Ե.
ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Լ. Մ.
ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Ռ. Բ.
(պատասխանատու
քարտուղար)
ՀՈՎՍԵՓՅԱՆ Ս. Գ.
ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ.
ՄԱՆԴԱԼՅԱՆ Ք. Լ.
ՄԵԼԻՔՅԱՆ Մ. Ա.
ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Մ. Դ.
ՍԱՔԱՆՅԱՆ Ա. Մ.
ՍԻՄՈՆՅԱՆ Հ. Ռ.
ՍԻՄՈՆՅԱՆ Ս. Ա.
ՖԱՆԱՐՋՅԱՆ Վ. Բ.

Խմբագրության հասցեն՝
*375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա, № 2*

ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝

գլխավոր խմբագիր՝ 52—89—93
գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—36
պատասխանատու քարտուղար՝ 52—99—22
պատասխանատու քարտուղարի տեղակալ՝ 56—59—93

**Բաժիններ**

մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի՝ 52—05—58
կուսակցական կյանք՝ 52—25—43
սոցիալ-տնտեսական պրոբլեմների՝ 52—57—56
գիտության և կուլտուրայի՝ 52—99—34
գրական աշխատողներ՝ 52—66—77
56—59—94
թողարկիչ, սրբագրիչ՝ 53—86—11



# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1987 թվականի հունիսի 25-ին աշխատանքն սկսեց ՍՄԿԿ Կենտրոնա-
կան կոմիտեի հերթական պլենումը: Պլենումի քննարկմանն է դրված «Կու-
սակցության խնդիրները էկոնոմիկայի կառավարման արմատական վերա-
կառուցման ուղղությամբ» հարցը: Այդ հարցի առթիվ զեկուցումով հանդես
եկավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը:
Պլենումի մասնակիցներին հնարավորություն էր ընձեռվել նախապես
ծանոթանալ ընկեր Մ. Ս. Գորբաչովի զեկուցման թեզիսներին, ինչպես նաև
ժողովրդական տնտեսության կառավարումը վերակառուցելու հարցերի վե-
րաբերյալ աշխատավորների նամակների տեսությանը:
Նիստում զեկուցման շուրջը ծավալված մտքերի փոխանակությանը
մասնակցեցին Ուկրաինայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ.
Վ. Վ. Շչերբիցկին, ՌՍՖՍՀ Մինիստրների խորհրդի նախագահ ընկ. Վ. Ի.
Վորոտնիկովը, ՍՄԿԿ Մոսկվայի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Բ. Ն.
Ելցինը, Բելոռուսիայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ.
Ն. Ն. Սոկոլովը, Տաշքենդի Վ. Պ. Չկալովի անվան ավիացիոն արտադրա-
կան միավորման խառատների բրիգադավար ընկ. Վ. Տ. Ադիլովը, ՍՄԿԿ
Տյումենի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Գ. Պ. Բոգոմյակովը, ՍՄԿԿ
Կենտկոմի քարտուղար ընկ. Լ. Ն. Զայկովը, Ղազախստանի կոմկուսի
Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Գ. Վ. Կոլբինը, ՍՄԿԿ Կենտկոմի քար-
տուղար ընկ. Վ. Պ. Նիկոնովը, ՍՄԿԿ Մոսկվայի մարզկոմի առաջին քար-
տուղար ընկ. Վ. Կ. Մեսյացը, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահի
առաջին տեղակալ, ՍՍՀՄ պետպլանի նախագահ ընկ. Ն. Վ. Տալիզինը,
Գորկու մարզի Կովեռնինոյի շրջանի Վ. Ի. Լենինի անվան կոլտնտեսության
նախագահ ընկ. Մ. Գ. Վագինը, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի փոխ-
պրեզիդենտ, Մոսկվայի Մ. Վ. Լոմոնոսովի անվան պետական համալսա-
րանի ռեկտոր ընկ. Ա. Ա. Լոգունովը, ՍՄԿԿ Արխանգելսկի մարզկոմի
առաջին քարտուղար ընկ. Պ. Մ. Տելեպնեը, Վրաստանի կոմկուսի Կենտկո-
մի առաջին քարտուղար ընկ. Ջ. Ի. Պատիաշվիլին, ՍՍՀՄ Մինիստրների
խորհրդի նախագահի տեղակալ, ՍՍՀՄ շինարարության պետական կոմի-
տեի նախագահ ընկ. Յու. Պ. Բատալինը:
Հունիսի 26-ին ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում շարունակվեց «Էկոնոմի-
կայի կառավարման արմատական վերակառուցման ուղղությամբ կուսակցու-
թյան խնդիրների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գոր-
բաչովի զեկուցման քննարկումը:
Մտքերի փոխանակությանը մասնակցեցին ՍՄԿԿ Լենինգրադի մարզ-
կոմի առաջին քարտուղար ընկ. Յու. Ֆ. Սոլովյովը, ՍՍՀՄ ֆինանսների մի-
նիստր ընկ. Բ. Ի. Գոստևը, Ուդմուրտական ԻՍՍՀ Դ. Ֆ. Ուստինովի ան-
վան «Իժմաշ» արտադրական միավորման կուսկոմիտեի քարտուղար ընկ.

Յու. Ի. Լոբովը, ՍՄԿԿ Նովոսիբիրսկի մարզկոմի առաջին քարտուղար ընկ.
Ա. Պ. Ֆիլատովը, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալ,
ՍՍՀՄ պետպլանի նախագահ ընկ. Լ. Ա. Վորոնինը, ՍՄԿԿ Ռոստովի մարզ-
կոմի առաջին քարտուղար ընկ. Բ. Մ. Վոլոդինը, Էստոնիայի կոմկուսի
կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Գ. Վայնոն, Ուկրաինական ՍՍՀ
«Կրասնոդոնուգոլ» արտադրական միավորման «Մոլոդոգվարդեյսկայա»
հանքի հանքաբանվորների կոմպլեքսային բրիգադի բրիգադավար ընկ.
Ա.. Յա. Կոլեսնիկովը, ՍՄԿԿ Սարատովի մարզկոմի առաջին քարտուղար
ընկ. Ս.. Ա.. Խոմյակովը, ՍՍՀՄ հաղորդակցության ճանապարհների մինիստր
ընկ. Ն. Ս. Կոնարևը, Մոսկվայի Ֆ. Է. Ձերժինսկու անվան «Տրյոխգորնայա
մանուֆակտուրա» բամբակեղենի կոմբինատի ջուլհակուհի ընկ. Ն. Ն. Չեր-
բակովան, ՀԱՄԿԽ-ի նախագահ ընկ. Ս. Ա.. Շալաևը, ՍՄԿԿ Կրասնոյարսկի
երկրկոմի առաջին քարտուղար ընկ. Պ. Ս. Ֆեդիրկոն, սովետական բանակի
և ռազմածովային նավատորմի գլխավոր քաղաքական վարչության պետ ընկ.
Ա.. Դ. Լիզիչովը, ՍՍՀՄ նավաշինական արդյունաբերության մինիստր ընկ.
Ի. Ս. Բելոուսովը, Կրասնոդարի երկրամասի Ուստ Լաբինսկի շրջանի «Կու-
բան» կոլտնտեսության բրիգադավար ընկ. Մ. Ի. Կլյոպիկովը:
Եզրափակման խոսքով հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քար-
տուղար ընկ. Մ. Ս. Գորբաչովը:
Քննարկված հարցի առթիվ պլենումն ընդունեց ծավալուն որոշում, որը
հրապարակվում է մամուլում:
Պլենումը հաստատեց ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի ներկայացրած
«Էկոնոմիկայի կառավարման արմատական վերակառուցման հիմնական
ուղղությունները»:
Պլենումը հավանություն տվեց պետական ձեռնարկության (միավոր-
ման) մասին ՍՍՀՄ օրենքի՝ համաժողովրդական քննարկման արդյունքների
հիման վրա լրամշակված նախագծին և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդին
հանձնարարեց այն ներկայացնել ՍՍՀՄ Գերագույն սովետի քննարկմանը:
Պլենումում որոշում ընդունվեց ՍՄԿԿ համամիութենական XIX կոն-
ֆերանսը գումարել 1988 թվականի հունիսի 28-ին, Մոսկվա քաղաքում,
Կրեմլի Համագումարների պալատում:
ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում քննարկվեցին կազմակերպական հարցեր:
Պլենումը ընկ. ընկ. Ն. Ն. Սլյունկովին և Ա.. Ն. Յակովլևին ՍՄԿԿ
Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածուներից փոխադրեց անդամ-
ներ:
Պլենումը ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար ընկ. Վ. Պ. Նիկոնովին ընտրեց
ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ:
Պլենումը ՍՍՀՄ պաշտպանության մինիստր ընկ. Դ. Տ. Յազովին ՍՄԿԿ
Կենտկոմի անդամության թեկնածուից փոխադրեց անդամ և նրան ընտրեց
ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածու:
Պլենումը ընկ. Ս. Լ. Սոկոլովին ազատեց ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի
անդամության թեկնածուի պարտականություններից՝ կենսաթոշակի անցնե-
լու կապակցությամբ:
Պլենումը Բելոռուսական ՍՍՀ «Իլյիչի հիշատակ» կոմբինատ-կոլտնտե-
սության մեքենայական կթի օպերատոր ընկ. Լ. Դ. Բրիզգալինին, Տյումենի
մարզի ՍՍՀ Միության 50-ամյակի անվան «Սուրգուտնեֆտ» վարչության
նավթի ու գազի հանույթի օպերատոր ընկ. Ն. Ա.. Պավլովին ՍՄԿԿ Կենտ-
կոմի անդամության թեկնածուներից փոխադրեց անդամներ:
Պլենումը ՍՄԿԿ Կենտկոմի կազմից հանեց ընկ. Դ. Ա.. Կունաևին այն
լուրջ թերությունների համար, որ հանրապետական կուսակցական կազմա-
կերպության ղեկավարման մեջ թույլ է տվել Ղազախստանի կոմկուսի Կենտ-
կոմի առաջին քարտուղար եղած ժամանակ:
Դրանով ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը ավարտեց իր աշխատանքը:

---

# ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԽՆԴԻՐՆԵՐԸ ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ԿԱՌԱՎԱՐՈՒՄՆ ԱՐՄԱՏԱՊԵՍ ՎԵՐԱԿԱՌՈՒՑԵԼՈՒ ՈՒՂՂՈՒԹՅԱՄԲ

## ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎԻ զեկուցումը ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում 1987 թվականի հունիսի 25-ին

Ընկերնե՛ր:

Մենք այս պլենումն անցկացնում ենք կուսակցության, մեր ամբողջ հասարակության կյանքի կարևորագույն իրադարձության նախաշեմին: Մի քանի ամիս հետո երկիրը նշելու է Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության յոթանասունամյակը:

Մեծ Հոկտեմբերը աշխարհին ավետեց բանվորների ու գյուղացիների նոր պետության ծնունդը, հաստատեց հասարակության սոցիալ-տնտեսական զարգացման մարդասիրական սկզբունքները, վեհացրեց աշխատավոր մարդուն, ասպարեզ բացեց մասսաների նախաձեռնության ու ստեղծագործության համար: Այս ամենը մեզ թույլ տվեց պատմականորեն շատ կարճ ժամկետներում երկիրը վերածել հզոր ինդուստրիալ տերության, հաջողությամբ լուծել բազմաբարդ սոցիալական պրոբլեմները, ստեղծել սոցիալիզմի ուղիով ընթացող ժողովուրդների բազմազգ մեծ միություն:

Սովետական մարդկանց յուրաքանչյուր սերունդ իր ավանդն է ներդրել Հոկ-
տեմբերի նվաճումների զարգացման, ամրապնդման ու պաշտպանության գործում:
Մենք իրավամբ հպարտանում ենք մեր պատմությամբ, վստահությամբ նայում ապա-
գային:

Արդի փուլում սովետական ժողովուրդը, կուսակցությունը, առաջնորդվելով լենինյան ուսմունքով, ստեղծագործաբար զարգացնելով այն, հեղափոխության գործը շարունակում են վերակառուցման միջոցով, հասարակության կյանքի բոլոր ոլորտների նորացման միջոցով:

Այսօր մենք պետք է քննարկենք վերակառուցման արմատական հարցերից մե-
կը: Խոսքը վերաբերում է էկոնոմիկայի կառավարման արմատական ռեֆորմին, տըն-
տեսական մեխանիզմի համակարգում որակական փոփոխություններին, փոփոխու-
թյուններ, որոնք նոր հնարավորություններ են բացում սոցիալիստական կարգերի
առավելություններն օգտագործելու համար:

Նախքան այդ հարցին անցնելը քաղբյուրոն անհրաժեշտ է համարում Կենտրոնական կոմիտեին ներկայացնել վերակառուցման ընթացքի, ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումների կատարման գնահատականը:

րումներից մեկը մասսաների հարաճուն ակտիվության և ամենատարբեր բնագավառներում գործունեության դեռևս կենսունակ բյուրոկրատական ոճի, վերակառուցումը սառեցնելու փորձերի միջև եղած անհամապատասխանությունն է: Այդ հակասության հաղթահարումը պահանջում է արագ ու վճռական միջոցառումներ՝ թե կադրային քաղաքականության մեջ և թե կուսակցական, պետական ու հասարակական կյանքի նոր մոտեցումների ու նորմերի հաստատման մեջ:

Քաղբյուրոն ի՞նչն է համարում այդ հակասության լուծման ամենաարդյունավետ միջոցը: Պատասխանը միանշանակ ու որոշակի է. դեմոկրատիայի լայն զարգացումը: Այսօր, և դա մեկ անգամ ևս ապացուցում է կյանքը, հասարակության կառավարման հենց կարգադրիչ-վարչական ձևերն են արգելակում մեր առաջընթացը, դեմոկրատական և միայն դեմոկրատական ձևերը կարող են հզոր արագացում հաղորդել առաջընթացին:

Վերակառուցման, դրա սկզբնական փուլի փորձը նաև դրդում է սևեռուն կերպով խորամուխ լինել բնակչության տարբեր խմբերի, կոլեկտիվների, գերատեսչությունների և կազմակերպությունների շահերի ռեալ կերպով գոյություն ունեցող հակասությունների մեջ: Անկասկած, սոցիալիզմը վերացնում է շահերի ներհակությունը: Հայտնի և ճիշտ թեզիս է, բայց բնավ չի նշանակում, թե շահերի ներհակության վերացումը նույնն է, ինչ դրանց միասնականացումը կամ համահարթումը:

Վերցնենք վերակառուցմանը ցույց տրվող վերաբերմունքը: Ամբողջությամբ վերցված կա ընդհանուր ըմբռնում, որ հնարավոր չէ ապրել ու աշխատել հին ձևով, որ վերակառուցումը, խոր վերափոխումները օբյեկտիվ անհրաժեշտություն են: Բայց հենց որ վերակառուցումը սկսեց կտրուկ կերպով շրջվել դեպի գործերը, ներթափանցել հասարակության բոլոր խավերը, հասնել կոնկրետ մարդուն, այս մենք տեսանք, թե ինչպես է ջրի երես դուրս գալիս առանձին անհատների ու խմբերի այսրոպեական, նեղ տեսանկյունից հասկացված շահերի, նույնիսկ եսամոլական մղումների և ամբողջ հասարակության շահերի, աշխատավորների տևական շահերի միջև եղած հակասությունը:

Մենք լավ ենք տեսնում, թե ինչպիսի դժվարություններով է ընթանում վերակառուցումը կուսակցական, սովետական և տնտեսական մարմիններում: Իսկ մի՞թե չի զգացվում, թե վերակառուցումը որքան հիվանդագին են ընդունում մի քանի կենտրոնական գերատեսչություններում: Վերակառուցման բարդությունների մասին է վկայում պետընդունման փորձը, հարբեցողության և ալկոհոլիզմի դեմ մղվող պայքարի, կարգուկանոնի և կարգապահության հաստատման ջանքերի փորձը: Այդ են վկայում նաև տնտհաշվարկային հիմունքների ներդրման և աշխատանքի վարձատրության այնպիսի սկզբունքների հաստատման ուղղությամբ արված առաջին քայլերը, երբ աշխատանքի վարձատրությունը ամբողջովին կապվում է վերջնական արդյունքների հետ:

Սրանք բոլորը, ընկերներ, ռեալ պրոցեսներ են, կենսական հակասություններ: Եվ մենք պետք է դրանք տեսնենք ու հաշվի առնենք:

Հասարակությունը չի կարող տեղիք տալ շահախնդրություններին և շահադիտական գործողություններին: Դրանց դեմ պետք է վճռաբար պայքարել: Եվ այստեղ արժանի օրինակ են ցույց տալիս բանվոր դասակարգը, աշխատավորական կոլեկտիվները, առանձնապես այն ձեռնարկություններում, որտեղ պետընդունում է մտցված: Ինչպես հայտնի է, դա հասարակ գործ չէ, դա շոշափում է միլիոնավոր մարդկանց շահերը: Եվ այնուամենայնիվ բանվոր դասակարգը հստակորեն սահմանեց իր դիրքորոշումը. պետընդունումը անհրաժեշտ գործ է, այն պետք է ամբողջ հասարակությանը, ամբողջ ժողովրդին, ամեն մի մարդու:

Բանվոր դասակարգը համարձակորեն է քայլում նորացման ուղիով: Ես կասեի, բանվոր դասակարգը բոլոր գործերում ընթանում է վերակառուցման ավանգարդում: Եվ դա վճռական նշանակություն ունի վերակառուցման հաջողության համար: Աշխատավորական կոլեկտիվները նախաձեռնողաբար ձեռնամուխ են լինում երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արմատական հարցերի լուծմանը, առաջին տեղը դնելով արտադրանքի մատակարարումների վերաբերյալ պայմանագրային պարտավորությունների ժամանակին և որակյալ կատարումը: Երկրում ուժ է հավաքում մրցությունը ի պատիվ մեծ Հոկտեմբերի 70-ամյակի: Մի խոսքով, բանվոր դասակարգը վերակառուցումը լիցքավորում է բարձր լարման էներգիայով:

Բանվոր դասակարգի իրոք քաղաքացիական դիրքորոշման ֆոնի վրա առանձնապես անհրապույր է այն մարդկանց վարքը, ովքեր շահադիտական օգուտներ բա-



ղելու պատճառով խանգարում են հասարակական վերափոխումներին, խոչընդոտում են վերակառուցումը: Կարծում եմ, աշխատավորական կոլեկտիվները, կուսակցական, հասարակական կազմակերպությունները պետք է խստություն ցուցաբերեն նման մարդկանց նկատմամբ, անհաշտ լինեն նրանց հանդեպ: Սա է կյանքի պահանջը: Քաղբյուրոյում մենք այսպես ենք հասկանում այդ հարցը:

Վերակառուցման պայմաններում նորովի է ծառանում հասարակական և անձնական շահերի ներդաշնակման պրոբլեմը: Հասարակական և անձնական շահերի ճիշտ հարաբերակցությունների որոնումը հսկայական նշանակություն ունի, դա կենդանի պրակտիկայի խնդիր է: Խոսքը վերաբերում է շահերի՝ անհատի, կոլեկտիվի, դասակարգերի, ազգերի, ազգությունների, սոցիալական և պրոֆեսիոնալ խմբերի շահերի ամբողջ կոմպլեքսը, նրանց փոխհարաբերությունների բարդ դիալեկտիկան հաշվի առնելուն՝ այնպես, որ ապահովվի հասարակության դինամիկ զարգացումը:

Շահերը պետք է դաստիարակել և դրանց ուղղություն տալ թե՛ տնտեսավարման նոր մեխանիզմի միջոցով, թե՛ դեմոկրատական հաստատությունների միջոցով և թե՛ քաղաքականության, գաղափարախոսության, մշակույթի միջոցով: Վերակառուցման իմաստը վերջին հաշվով հենց շահերը հաշվի առնելն է, շահերի վրա ներգործելը, դրանցով և դրանց միջոցով կառավարելը:

Պետք է ասել նաև աշխատանքի և բաշխիչ հարաբերությունների ոլորտում եղած հակասությունների մասին, որոնց մենք բախվեցինք, երբ սկսեցինք անցնել լրիվ տնտեսական հաշվարկի, վերջնական արդյունքի համար վարձատրության, կոլեկտիվ և ընտանեկան կապալի: Ի՞նչ ստացվեց այստեղ: Բանն այն է, որ սոցիալիզմի «յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ աշխատանքի» հիմնական սկզբունքը պրակտիկայում հաճախ զոհաբերվում էր պարզունակ հասկացվող հավասարությանը: Այս հարցերն այսօր ակտիվորեն քննարկվում են՝ և ոչ միայն տնտեսական, այլև բարոյական, էթիկական տեսանկյունից:

Կարծես թե պարզ է, որ հավասարությունը համահավասարեցում չէ: Բայց պրակտիկայում հաճախ ուրիշ բան էր ստացվում: Համահավասարեցման միտումը համառորեն իր համար ճանապարհ էր բացում: Այն ծնում էր խնամառուականություն, բացասաբար ազդում աշխատանքի քանակի ու որակի վրա, թուլացնում էր աշխատանքի արտադրողականության բարձրացման խթանները:

Պետք է կրկին ու կրկին ընդգծել, որ իսկական հավասարություն կարող է ապահովվել միայն քաղաքական, տնտեսական, սոցիալական և իրավական այն միջոցների ամբողջությամբ, որ ունի սոցիալիզմը:

Մենք հպարտանում ենք մեր երկրում մարդու սոցիալական պաշտպանվածության բարձր մակարդակով: Դա այն է, ինչ սոցիալիզմը դարձնում է սոցիալիզմ, աշխատավորների հասարակարգ, և հասարակարգ՝ աշխատավորների համար: Բայց սոցիալիստական հասարակության մեջ մարդու նյութական և բարոյական դիրքի հիմքը պետք է լինի աշխատանքը, և միայն աշխատանքը:

Մարդու ստեղծագործական, բարձրարտադրողական աշխատանքը, տաղանդը, ընդհանուր գործի մեջ նրա ռեալ ավանդը պետք է ըստ ամենայնի խրախուսել: Եվ, ընդհակառակը, պասսիվությունը, անգործությունը, աշխատանքի ցածր կուլտուրան, ընդհակահասարակական դրսևորումները պետք է գնահատվեն համապատասխան կերպով՝ սոցիալապես ու տնտեսապես: Հենց սա է սոցիալական արդարության սոցիալիստական բովանդակությունը:

Ընկերնե՛ր, ես անդրադարձա այն պրոբլեմների սոսկ մի մասին, որոնցում առավել շոշափելիորեն է արտահայտվում տեղի ունեցող երևույթների հակասականությունը: Խնդիրների նորությունը, մասշտաբայնությունը պահանջում են մշտական ուշադրություն վերակառուցման ընթացքի և դրա սոցիալ-տնտեսական հետևանքների, այդ բարդ հասարակական պրոցեսի հակասությունների գիտական վերլուծության նկատմամբ: Մեզ կենսականորեն անհրաժեշտ է սկզբունքային ճեղքում տեսական ճակատում՝ հիմնված հասարակական կյանքի փաստերի ամբողջության խիստ վերլուծության, մեր շարժման նպատակների ու հեռանկարների գիտական հիմնավորման վրա: Չի կարելի հաջողությամբ առաջ ընթանալ փորձարկումների և սխալների մեթոդով: Դա թանկ է նստում հասարակության վրա: Քաղաքական ղեկավարման արվեստը պահանջում է հակասությունները ի հայտ բերելու և արդյունավետորեն լուծելու, դրանք ոչ թե քողարկելու, ոչ թե կուտակելու, այլ առաջադիմության ու ինքնազարգացման աղբյուր դարձնելու կարողություն:

Տեսության մեջ, ապագայի խորաթափանցության մեջ համարձակության ոգևո-

րիչ օրինակներ են մեզ թողել մարքս-լենինյան ուսմունքի հիմնադիրները: Փարիզի կոմունայի փորձը Կ. Մարքսին հնարավորություն տվեց մշակել կապիտալիզմից կոմունիզմին անցնելու ուղիների հարցը: Սովետական Ռուսաստանում իրականացված սոցիալիստական վերափոխումների առաջին տարիների փորձի հիման վրա Վ. Ի. Լենինը զարգացրեց և հարստացրեց սոցիալիստական հասարակության կառուցման տեսությունը: Ներկայումս պետք է խորապես իմաստավորել սոցիալիստական զարգացման պրակտիկան, թե՛ մեր և թե՛ եղբայրական երկրների կուտակած հարստագույն փորձը՝ դրա ամբողջ բազմազանությամբ: Այդ ուղղությամբ աշխատանք ծավալվել է, և մենք արդեն ունենք որոշ կարևոր արդյունքներ, որոնց վրա հենվում ենք մեր քաղաքականությունը ձևավորելիս և իրականացնելիս: Բայց գլխավորը դեռ առջևում է:

Մի խոսքով, ընկերնե՛ր, չնայած բոլոր բարդություններին, դժվարություններին և արգելքներին, այսօր պլենումում մենք լրիվ հիմքով կարող ենք ասել, որ վերակառուցումը գաղափարական ու բարոյական հաղթանակ է տարել: Այն թե՛ ընդլայնվել է և թե՛ խորացել:

Բայց, տալով այսպիսի պատասխանատու գնահատական, մենք չպիտի թույլ տանք նաև չափազանցություններ, առավել ևս բարեհոգություն: Այժմ մենք ըստ էության գտնվում ենք վերակառուցման միայն առաջին ալիքի վրա: Այդ ալիքը ալեկոծել է լճացած ջուրը:

Կուսակցությունն արթնացրեց մասսաների ակտիվությունը: Եվ մեր պարտքն է թույլ չտալ, որ պոռթկումը մարի, այլ զարգացնել այն, հնարավորություն ընձեռել դրսևորելու լիակատար ուժով: Այս մասին անհրաժեշտ է ասել, մանավանդ որ աշխատավորների մեջ վերակառուցման բախտի համար տագնապը չի վերանում: Մարդիկ շարունակում են խորհուրդներ տալ, ես կասեի, պահանջել՝ կանգ չառնել, առաջ ընթանալ փոփոխությունների ուղիով: Վերջերս, Բայկոնուր կատարածս ուղևորության ժամանակ Լենինսկ քաղաքի աշխատավորների հետ զրույցներից մեկի ընթացքում ինձ հարցրին. իսկ ե՞րբ վերակառուցումը կհասնի նաև մեզ: Ես պատասխանեցի, որ այստեղ են գտնվում հանրապետության և մարզի ղեկավարները, նրանք լսում են մեր խոսակցությունը, թող մտածեն, թե ինչու է այդպիսի հարց տրվում, և համապատասխան դասեր քաղեն իրենց համար:

Կամ վերցրեք ՍՄԿԿ Կենտկոմում, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունում և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդում, կենտրոնական թերթերի և հանդեսների, ռադիոյի և հեռուստատեսության խմբագրություններում ստացվող նամակները: Դրանց մեջ նույն բանն է ասվում: Մարդիկ գրում են, որ իրենք վերակառուցման կողմն են, բայց իրենց շուրջը փոփոխություններ չեն տեսնում: Վերակառուցումը չի շոշափել այն աշխատավորական կոլեկտիվները, քաղաքներն ու գյուղերը, որտեղ նրանք ապրում և աշխատում են: Շատերը դա ապացուցում ու հաստատում են փաստերով: Ուրեմն, չնայած հսկայական ջանքերին, վերակառուցումը ռեալ կերպով դեռ չի հասել շատ տեղեր: Սա, ընկերներ, շատ լուրջ հայտանիշ է: Քաղբյուրոն չի կարող անտեսել ստեղծվող իրավիճակը: Այն բազմիցս քննարկվել է ներկա պլենումը նախապատրաստելիս:

Իսկ ինչպիսի՞ հետևության ենք մենք հանգում:

Վերակառուցումը սկսվեց կուսակցության նախաձեռնությամբ և իրականացվում է նրա ղեկավարությամբ: Կուսակցությունը ալեկոծեց երկիրը, իր գաղափարներով խանդավառեց միլիոնավոր մարդկանց, ծնեց հսկայական հույսեր: Ու եթե այսօր աշխատավորները մտահոգված են վերափոխումների դանդաղ ընթացքի առթիվ, ուրեմն նշանակում է մենք թուլություններ ենք թույլ տալիս աշխատանքում:

Ընկերնե՛ր, նկատվում է, և այդ մասին են խոսում փաստերը, մի տագնապալի միտում. մի շարք կուսակցական կազմակերպությունների հետ մնալը գերիշխող տրամադրություններից, հասարակության մեջ ծավալվող դինամիկ պրոցեսներից: Ակներևաբար, այդ հարցը մեր պլենումում քննարկում է պահանջում: Այսօր դա հիմնական մոմենտն է աշխատանքում: Ինչպես գործի կուսակցությունը՝ այնպես էլ կընթանա վերակառուցումը:

Երբ երկու տարի առաջ մենք ղեկավար կուսակցական, սովետական, տնտեսական կադրերից պահանջեցինք կազմակերպել արդյունավետ աշխատանք, ապա դրան ի պատասխան հաճախ լսում էինք. մենք հասկանում ենք նոր խնդիրները, բայց ժամանակ տվեք գնահատել իրադրությունը, հասկանալ և յուրացնել նոր մեթոդներն ու ձևերը, կարողանալ դրանք կիրառել պրակտիկայում:



Քաղբյուրոն դրան վերաբերվեց ըմբռնումով: Մենք այն ժամանակ ասացինք, որ վերակառուցման համար յուրաքանչյուրին տրվում է թե՛ ժամանակ և թե՛ հնարավորություն: Բայց գործերը, ընկերներ, չեն սպասում: Չի կարելի թույլ տալ, որ կուսակցության մեջ վերակառուցումը հետ մնա տեղի ունեցող տնտեսական, սոցիալական և հոգևոր պրոցեսներից, որ կյանքում, մարդկանց տրամադրության մեջ տեղի ունեցող վերափոխումները առաջ անցնեն կուսակցության մեջ և մանավանդ նրա ղեկավար մարմիններում այդ պրոցեսների ըմբռնումից:

Արդարացիորեն են գրում աշխատավորները. ով ուզում էր վերակառուցվել, արդեն արել է դա և ներգրավվել աշխատանքի մեջ: Իսկ ով չի տոգորվել նոր խնդիրների ըմբռնումով, նա շարունակում է կառչել հնին և իր անգործությամբ փաստորեն սաբոտաժի է ենթարկում վերակառուցումը: Ուստի և քաղբյուրոն կոնկրետորեն է դնում գործերի վիճակի համար, հասունացած պրոբլեմների ռեալ լուծման համար, վերակառուցման ընթացքի համար կոմունիստների, կուսակցական, սովետական, տնտեսական մարմինների ղեկավարների պատասխանատվությունը բարձրացնելու հարցը:

Պահանջկոտությունը հարկավոր է բարձրացնել բոլոր մակարդակներում: Բայց պետք է սկսել իրենից՝ քաղբյուրոյից, քարտուղարությունից, կառավարությունից, Կենտկոմի անդամներից:

Հասարակության զարգացման ներկա շրջադարձային փուլում հսկայական պատասխանատվություն է ընկնում Կենտկոմի քաղբյուրոյի վրա: Ինարկե, նրա գործունեությանը գնահատական տալը Կենտրոնական կոմիտեի առանձնաշնորհն է: Ուզում եմ ձեզ հավաստիացնել, որ քաղբյուրոյում առկա է նոր բարդ խնդիրների լուծման համար Կենտկոմի, կուսակցության և ժողովրդի հանդեպ պատասխանատվության խոր ըմբռնում:

Կարճ ժամկետներում մասշտաբային աշխատանք է ծավալվել հասարակական վերափոխումների բոլոր ուղղություններում:

Կարող եմ հավաստել, որ կուսակցության և երկրի ղեկավարության մեջ հայացքների միասնություն գոյություն ունի վերակառուցման, ներքին և արտաքին քաղաքականության արմատական հարցերի առթիվ: Այդ միասնությունը թույլ է տալիս ընդունել և վստահորեն կենսագործել ժամանակի թելադրած որոշումները: Կարծում եմ, դա միշտ կարևոր է, բայց հատկապես՝ զարգացման բեկումնային ժամանակաշրջաններում:

Քաղբյուրոյի անունից պետք է ինքնաքննադատաբար հայտարարեմ, որ մենք տեսնում ենք նաև մեր թուլությունները պրակտիկ գործունեության մեջ: Կան փաստեր, երբ երկրի զարգացման խոշոր հարցերին վերաբերող կարևոր որոշումներն իրականացվում են դանդաղորեն, ոչ լրիվ ծավալով: Այս առումով քաղբյուրոյում եղավ սկզբունքային և անկեղծ խոսակցություն: Այժմ մենք կանոն ենք դարձրել պարբերաբար, վերահսկողության կարգով Կենտկոմի քաղբյուրոյի և քարտուղարության նիստերում քննարկել այն կարևորագույն որոշումների կատարման ընթացքը, որոնք ընդունվել են Կենտկոմի ապրիլյան պլենումից և ՍՄԿԿ XXVII համագումարից հետո:

Վերակառուցման պայմաններում ակտիվ դիրքերից է գործում ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը: Դրա հետ մեկտեղ, նա պետք է այսուհետև էլ կատարելագործի էկոնոմիկայի կառավարման, սոցիալական քաղաքականության խնդիրների իրականացման իր գործունեությունը, զարգացման հեռանկարների նկատմամբ հոգատարությունը զուգակցելով ընթացիկ խնդիրների լուծման հետ: Կյանքի պահանջից դանդաղ է ընթանում կենտրոնական գերատեսչությունների վերակառուցումը:

Մեզ համար պարզ է, որ մեր կողմից իրականացվող վերափոխումները անհնար են առանց տեղական կուսակցական, սովետական, տնտեսական մարմինների, բոլոր ղեկավար կադրերի ակտիվ աշխատանքի: Նրանց վրա մեծ պատասխանատվություն է ընկած վերակառուցման կոնկրետ հարցերի գործնական լուծման համար: Եվ այն, ինչը այսօր մենք նշում ենք որպես դրական, զգալի չափով կապված է տեղական կազմակերպությունների աշխատանքի հետ:

Բայց, կարծում եմ, դուք կհամաձայնեք, որ վերակառուցումն էլ տեղերում նորնոր է ծավալվում, ըստ որում ամենուրեք միատեսակ չի ընթանում: Ինչ-որ տեղ դեռևս պահպանվում են իներտության, անձեռներեցության «արգելոցները»: Այս բոլորը նույնպես իրողություններ են, որոնք չտեսնելու իրավունք մենք չունենք, մանավանդ իրավունք չունենք դրանք թողնելու առանց ուշադրության և կուսակցական գնահատման:

# ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ ԱՐԴԻ ՓՈՒԼԻ ԱՌԱՋՆԱՀԵՐԹ ԽՆԴԻՐՆԵՐԸ

Ընկերնե՛ր, մեր խնդիրն է քննադատաբար նայել գործերի վիճակին, անաչառ վերլուծության ենթարկել վերակառուցման հաջողություններն ու թուլությունները։ Մի խոսքով, հարկավոր է սկզբունքային և անկեղծ ընկերական խոսակցություն, հարկավոր են կոնկրետ առաջարկություններ և կոնստրուկտիվ գաղափարներ։

Սկսենք այն բանից, թե ինչպես է զարգանում ժողովրդական տնտեսությունը։ Քաղբյուրոն նախօրոք ուշադրություն էր հրավիրում այս տարվա խնդիրների բարդության և պատասխանատվության վրա։ Թվում էր, թե դա ամենքին հասկանալի է։ Սակայն տարվա արդեն առաջին ամիսներին թույլ տրվեցին լուրջ սխալներ, ինչը անկանոնությունների հանգեցրեց էկոնոմիկայի շատ տեղամասերում։ Թե՛ քաղբյուրոյին և թե՛ կառավարությանը հարկ եղավ շտապ կարգով միջոցներ ձեռնարկել վիճակը շտկելու նպատակով։ Ու թեև իրադրությունը կարգավորվում է, այդուհանդերձ, զգալի վնաս է պատճառվել։

Իսկ չէ որ տարեսկզբին տեղի ունեցածը կարելի էր նախատեսել և թույլ չտալ։ Բայց դա չարվեց, և դրա համար առաջին հերթին պատասխանատու են ՍՍՀՄ պետպլանը (ընկ. Ն. Վ. Տալիզին) և ՍՍՀՄ պետմատը (ընկ. Լ. Ա. Վորոնին)։

Բայց սխալներ թույլ տվեցին ոչ միայն այդ մարմինները։ Ժամանակին անհրաժեշտ միջոցներ չձեռնարկեցին սև մետալուրգիայի մինիստրությունը (ընկ. Ս. Վ. Կոլպակով) և քիմիական արդյունաբերության մինիստրությունը (ընկ. Յու. Ա. Բեսպալով)։ Այդ մինիստրությունների ձեռնարկությունների կողմից պայմանագրային մատակարարումների ձախողումը ռիթմի խախտումների հանգեցրեց ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերում, նախ և առաջ՝ մեքենաշինության մեջ։

Հինգ ամսվա արդյունքներով կոլտնտեսություններին ու սովխոզներին տեխնիկայի մատակարարումների պլանի կատարումը ձախողեց անասնապահության և կերարտադրության մեքենաշինության մինիստրությունը (ընկ. Լ. Ի. Խիտրուն)։ Պատճառը ճյուղի շատ ձեռնարկությունների աշխատանքի վատ կազմակերպումն է, հատկապես թողարկվող արտադրանքի որակի հարցում։ Ճյուղում ստեղծված հսկայական պոտենցիալը պատշաճ հատույցը չի տալիս։

Կամ վերցրեք թեթև արդյունաբերությունը, որը փոխադրված է տնտեսավարման նոր պայմանների։ Ճյուղի ղեկավարությունը օբյեկտիվ դժվարություններ վկայակոչելով, հրաժարվեց ընդունել առևտրի շատ պատվերներ և դիմեց արտադրանքի արտադրության կրճատման։ Իսկ չէ որ աճի համար ռեալ հնարավորություններ կան։ Հարկավոր էր լրջորեն զբաղվել այն բանով, որ պահանջարկ չվայելող ապրանքների փոխարեն սկսվի, ընդ որում անհրաժեշտ քանակություններով, գնայուն արտադրանքների արտադրությունը, որոնց սպասում է սպառողը։ Թեթև արդյունաբերության մինիստրության և մինիստր ընկ. Վ. Գ. Կլյուևի դիրքորոշումը այն բանի օրինակն է, թե գերատեսչական շահերը ինչպես են վեր դասվում հասարակության պահանջմունքներից, հետևաբար նաև ժողովրդի շահերից։ Ուրիշ գնահատական այստեղ չի կարող լինել։

Այս ամենի կապակցությամբ ուզում եմ հատկապես ընդգծել վերակառուցման համար կառավարման կենտրոնական մարմինների պատասխանատվությունը։ Նոր խնդիրները հաշվի առնելով, հարկավոր է այն մշտապես բարձրացնել։

Մենք ունենք, օրինակ, հայրենական մեքենաշինության արդիականացման ծրագիր։ Դա մեծ գործ է։ Այստեղ ծավալված է մասշտաբային աշխատանք, վերջնական լուրջ արդյունքների հասնելու նպատակադրումով։

Բայց պետք է ուղղակի ասել. մեզ մտահոգում է հաստոցաշինության, ծանր և տրանսպորտային մեքենաշինության, էլեկտրատեխնիկական արդյունաբերության ու կենցաղային սարքերի մեքենաշինության մինիստրությունների վիճակը։ Առայժմ բեկումից հեռու է սարքաշինությունը, թեև այստեղ որոշակի ջանքեր են գործադրվում։

Արդիականացման խնդիրները դանդաղորեն են լուծվում նաև մյուս մեքենաշինական մինիստրություններում։ Մենք, իհարկե, հասկանում ենք, որ մեքենաշինարարները բախվել են մեծ բարդությունների ու դժվարությունների։ Խոսքը ամբողջ մեքենաշինական համալիրի աշխատանքի արմատական վերակառուցման մասին է։ Բայց դժվար է հասկանալ, թե ինչու շատ մինիստրներ, մինիստրությունների կուսակցական կոմիտեներ և ապարատներ այս իրադրության մեջ գործում են այնպես, ասես իրենք լուծում են սովորական հարցեր։ Ստեղծված իրավիճակում ակնհայտորեն անբավարար են ակտիվությունն ու գործարարությունը մեքենաշինության բյուրոյի (ընկ. Ի. Ս. Սիլաև), պետպլանի, պետմատի և ՍՄԿԿ Կենտկոմի որոշ բաժինների աշխատանքում։ Ըստ երևույթին, մեքենաշինական համալիրի գործերի վիճակը արժանի է քննարկման քաղբյուրոյում և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդում։



Ընկերնե՛ր, ես արդեն ասել եմ, որ տեղերում բնավ էլ ոչ բոլոր կուսակցական ու սովետական մարմիններն են ակտիվորեն ներգրավվել վերակառուցման մեջ։ Այն տեղապտույտ է տալիս, օրինակ, Հայաստանում։ Հանրապետության աշխատավորները մեծ տագնապ են արտահայտում այն իրադրության համար, որն այստեղ ստեղծվել է էկոնոմիկայում և հատկապես գաղափարաքաղաքական ոլորտում։ Մինևնույն ժամանակ, Հայաստանի կոմկուսի ղեկավարությունը և նախ և առաջ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը գտնում են, որ հանրապետությունում վիճակը միանգամայն բարվոք է։ Ավելին, ոմանք նույնիսկ պնդում են, թե Հայաստանում վերակառուցումն սկսվել է դեռ ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումից առաջ։ Դժվար է ասել, թե տվյալ դեպքում ինչն է նկատի առնվում։

Հանրապետությունում հանդես են բերում ոչնչով չարդարացված հանգստություն, պատշաճ պահանջկոտություն չկա կադրերի նկատմամբ, արդյունավետ պայքար չի ծավալված կաշառակերության, սպեկուլյացիայի, պրոտեկցիոնիզմի դեմ։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմը պետք է խորապես վերլուծի գործերի վիճակը թե՛ կուսակցական կազմակերպությունում և թե՛ ամբողջությամբ վերցրած հանրապետությունում, այն քննության առնի սկզբունքային դիրքերից և վերակառուցմամբ զբաղվի ոչ թե խոսքով, այլ գործով։

Նկատելի քիչ բարեփոխումներ են տեղի ունենում նաև այնպիսի խոշորագույն մարզային կուսակցական կազմակերպությունում, ինչպիսին է Գորկու մարզային կազմակերպությունը։ Կենսականորեն կարևոր շատ հարցեր այստեղ լուծվում են անբավարար կերպով։ Մարզի հզոր պոտենցիալը հարկ եղած ձևով չի օգտագործվում, թույլ են զարգանում սոցիալական ոլորտը և էկոնոմիկայի ագրարային սեկտորը։ Պետք է ենթադրել, որ կուսակցության մարզային կոմիտեն (ընկ. Յու. Ն. Խրիստորադնով), մարզի բոլոր կուսակցական կազմակերպությունները պետք է հետևություններ անեն քննադատությունից և շտկեն դրությունը։

Նոր իրադրության մեջ կոչված են նորովի գործելու նաև ՍՄԿԿ Կենտկոմի բաժինները՝ ավելի խոր ազդեցություն գործելով հանրապետական, երկրամասային և մարզային կուսակցական կազմակերպությունների գործերի վիճակի վրա, ապահովելով ՍՄԿԿ Կենտկոմի որոշումների կատարման վերահսկողությունը։

Ընկերնե՛ր, կուսակցության և հասարակության մեջ հաստատվել է այն ըմբռնումը, որ վերակառուցումը երկարաժամկետ քաղաքականություն է, որ սովետական հասարակությունը նոր բնագծերի հասցնելու խնդիրը մեկ հարվածով չի լուծվի։ Բայց, ինչպես պարզվում է, որոշ ընկերներ այդ ճշմարիտ և իրատեսական հիմնադրույթը այնպես են հասկացել, թե վերակառուցումը իբր կապված չէ արագացման մեր ընդհանուր ստրատեգիական հիմնադրույթի հետ, թե այն կարելի է իրականացնել անշտապ կերպով, առանց հատուկ հոգսերի, ասենք նաև իրենց ոչ այնքան նեղություն տալով։ Դա խոր մոլորություն է առնվազն երկու պատճառով։

Առաջին, մենք առանց այդ էլ տարիներ ու տասնամյակներ ենք կորցրել։ Երկրորդ, «վաղվա հրաշալի օրը» կարող է և չլինել, եթե այսօր քրտնաջան չաշխատենք, փոխելով մտածելակերպը, հաղթահարելով իներցիան, յուրացնելով նոր մոտեցումներ։ Այն դատողությունները, թե «վերակառուցումը կսպասի», վնասակար են և վտանգավոր։ Քաղբյուրոն հարցը այսպես է դնում. արդեն այսօր, վերակառուցման սկզբնական փուլում, աշխատանքի յուրաքանչյուր տեղամասում, յուրաքանչյուրի գործունեության ոլորտում հարկավոր է հասնել տեսանելի գործնական արդյունքների։

Սովետական մարդիկ հասկանում են, որ վերակառուցման շատ նպատակների հասնելը կպահանջի երկարատև ժամանակ։ Բայց նրանք արդարացիորեն հարց են առաջադրում։ Իսկ ինչու՞ այսօր չեն լուծվում անհետաձգելի և համեմատաբար հասարակ խնդիրները, որոնք էապես կբարելավեին աշխատանքի, կյանքի, կենցաղի պայմանները, կառողջացնեին բարոյահոգեբանական մթնոլորտը։

Մեր մարդկանց ուշադրությունից չի վրիպել նաև այն, որ ինչ-որ տեղ ոչ միայն չի հաջողվում առաջընթաց շարժումը, այլև գիջվում են նախկինում նվաճված դիրքերը։ Վերցրեք կարգապահության և կարգուկանոնի համար մղվող պայքարը։ Չէ որ

փաստ է, որ շատ տեղերում խանդավառությունը մարել է, աշխատանքը կատարվում է անչափ դանդաղորեն: Դարձյալ հաճախակի են դարձել հարբեցողությունը, դարձյալ իրենց ազատ են զգում անբանները, պորտաբույծները, թռցնողները՝ ուրիշների հաշվին ապրող մարդիկ: Աշխատավորները մտահոգված են դրանով: Եվ դա հիմնավորված մտահոգություն է, ընկերնե՛ր:

Կարգապահության թուլության, պատշաճ կարգուկանոնի բացակայության մասին են վկայում պարբերաբար կրկնվող խոշոր արտակարգ պատահարների փաստերը: Պատճառները, պարզվում է, որպես կանոն, նույնն են՝ անկարգապահությունը, անփութությունը, անտնտեսվարությունը, անպատասխանատվությունը: Այդ են վկայում նաև սովետական օդային տարածության խախտումը և Մոսկվայում արևմտագերմանական մարզական ինքնաթիռի վայրէջքը: Պատահարը աննախադեպ է բոլոր տեսակետներից: Այն մեկ անգամ ևս հիշեցնում է, թե մեր հասարակության մեջ, նույնիսկ բանակում, որքան ուժեղ ու կենսունակ են մնացել այն բացասական երևույթները, որ բացահայտել էին Կենտկոմի ապրիլյան պլենումը և կուսակցության XXVII համագումարը: Դա ընդգծում է, որ անհրաժեշտ է բարձրացնել զգոնությունը, գործել էլ ավելի վճռականորեն, ամենուրեք ամրապնդել կարգապահությունը, կազմակերպվածությունը, պատասխանատվությունն ու կատարողականությունը բոլոր մակարդակներում: Քաղբյուրոյի և պաշտպանության խորհրդի անունից վճռականորեն հայտարարում եմ՝ ո՛չ կուսակցության, ո՛չ ժողովրդի մեջ կասկածներ չպետք է լինեն երկիրը պաշտպանելու ՍՍՀՄ զինված ուժերի ընդունակության նկատմամբ:

Ընկերնե՛ր, երբ մենք խոսում ենք առաջնահերթ բնույթի խնդիրների մասին, անհետաձգելի գործերի մասին, ելնում ենք այն բանից, որ առաջին հերթին կվերացվեն ակնհայտ և տարածված թերությունները, որ ավելի շատ կարգուկանոն կլինի առևտրում, սպասարկումների ոլորտում, առողջապահության, կոմունալ տնտեսության մեջ, այսինքն էկոնոմիկայի այն օղակներում, որոնք անմիջականորեն կապված են մարդկանց առօրյա կյանքի հետ:

Իհարկե, այս հարցերը պետք է ուշադրության կենտրոնում լինեն կառավարական մակարդակով, բայց հարկավոր է բարձրացնել պահանջկոտությունը իշխանության հանրապետական, երկրամասային, մարզական, օկրուգային և քաղաքային ու շրջանային մարմինների գործերի վիճակի համար:

Այժմ, ցավոք, հարկ է լինում բախվել այնպիսի իրավիճակի, երբ վերակառուցման օգուտի մասին շատ են խոսում, բայց գործնականում քիչ բան է արվում մարդկանց ամենահասարակ կարիքները բավարարելու համար: Տեղական շատ աշխատողների մեջ խորապես արմատացել է խնամառուականությունը: Նույնիսկ այնտեղ, որտեղ հարցի լուծման համար բավական է միայն մի փոքր ջանք, նվազագույն ուշադրություն, շարունակում են գցել կենտրոնի վրա և օգնություն սպասել վերևից: Այսպիսի դիրքորոշումը բանի պետք չէ: Այն պետք է վճռականորեն դատապարտվի և հաղթահարվի: Ահա թե որտեղ են հարկավոր կուսակցական աչքը, կուսակցական խստապահանջությունը և վերահսկողությունը: Իսկ դա ակնհայտորեն չի բավականացնում:

Այսօրվա պլենումում առաջնահերթների թվում կուզենայինք հատկապես առանձնացնել այնպիսի խնդիրներ, որոնցից է մեր ժողովրդին պարենով, բնակարանով, ժողովրդական սպառման ապրանքներով և սպասարկումներով ապահովելը:

Պետք է ասել, որ այստեղ արդեն կան թե՛ կոնկրետ փորձ և թե՛ կոնկրետ արդյունքներ:

Վերցնենք ՊԱՐԵՆԱՅԻՆ ՊՐՈԲԼԵՄԸ: Այստեղ վիճակը բարելավվում է: Այս առումով թվերը հիմնականում հայտնի են: Նշեմ միայն մի քանիսը, որոնք բնութագրում են վերջին երկու տարում եղած փոփոխությունները: Հացահատիկի արտադրությունը 1984 թվականի համեմատությամբ ավելացել է 37 միլիոն տոննայով, մսինը՝ (սպանդային քաշով)՝ մեկ միլիոն տոննայով, կաթինը՝ 4,3 միլիոն տոննայով, ձվինը՝ 4,2 միլիարդ հատով:

Մենք կարող եք խոսել գյուղում տնտեսական կյանքի աշխուժացման մասին: Դա հնարավոր դարձավ տնտեսական պայմանների, տնտեսավարման մեթոդների փոփոխման, նախ և առաջ լրիվ տնտհաշվարկի, կոլեկտիվ և ընտանեկան կապալի արմատավորման շնորհիվ:

Քաղբյուրոն գտնում է, որ ներկա փուլում բոլոր օբյեկտիվ պայմանները ստեղծված են, որպեսզի, ես կասեի, մի յուրօրինակ ցատկ տեղի ունենա գյուղատնտեսական



արտադրանքի արտադրության ավելացման գործում: Արմատական տեղաշարժի համար հնարավորություններ կան բոլոր կոլտնտեսություններում և սովխոզներում:

Ընդսմին կարևոր է, թե ինչի՞ վրա առանձնահատուկ ուշադրություն դարձնել: Նախ և առաջ, ինտենսիվ տեխնոլոգիաներ յուրացնել հողագործության և անասնապահության մթերքների արտադրության մեջ, լայնորեն արմատավորել կոլեկտիվ և ընտանեկան կապալը, առավել ակտիվորեն լուծել գյուղի սոցիալական պրոբլեմները: Դա, ընկերներ, հարցի մեկ կողմն է:

Մյուսն այն է, որ վճռականորեն կանգնեցնենք նրանց, ովքեր շարունակում են միջամտել կոլտնտեսությունների և սովխոզների աշխատանքին՝ դրա համար նյութական պատասխանատվություն չկրելով: Տնտեսությունների գործունեությանը ցույց տրվող հենց այդպիսի ապօրինի միջամտությունից խնդրեցին պաշտպանել կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարները ՍՄԿԿ Կենտկոմում օրերս տեղի ունեցած խորհրդակցությունում: Մեր պարտականությունն է գյուղի աշխատավորներին օգնել կարգի հրավիրելու նրանց, ովքեր չեն կարողանում հրաժարվել աշխատանքի նախկին մեթոդներից:

Միութենական-հանրապետական փոնդ առաքվող մատակարարումների պլանավորման կարգի փոփոխման շնորհիվ այսօր անհամեմատ մեծացել է հանրապետությունների, երկրամասերի, մարզերի և շրջանների շահագրգռությունը գյուղատնտեսական արտադրանքի արտադրության ավելացմամբ: Բայց միաժամանակ մեծացել է նաև նրանց պատասխանատվությունը պարենով ապահովելու համար: Պետք է ասել, որ դա տեղերում հզոր խթան տվեց նախաձեռնությանը: Այնտեղ, որտեղ արագորեն և իսկապես ըմբռնել են վերափոխումների իմաստը, գնահատել բացված հնարավորությունները, արդեն առկա են բավական լավ արդյունքներ: Օրինակ, Կրասնոդարի երկրամասը առաջին կիսամյակի արդյունքներով հաջողությամբ կատարեց միութենական-հանրապետական փոնդին անասնապահական մթերքների մատակարարումները: Բացի դրանից, նրանք սեփական կարիքների համար մթերեցին 15 հազար տոննա միս, հիմնական շուկայական փոնդերի ավելի քան 35 տոկոսը, ավելի քան 100 հազար տոննա կաթ և 65 միլիոն ձու:

Կամ վերցրեք Թաթարական ԻՍՍՀ-ն: Այստեղ տեղական կարիքների համար հիմնական փոնդերին ավելացվել է 15 հազար տոննա միս և 59 հազար տոննա կաթ: Նման վիճակ է Ուկրաինայի Իվանո-Ֆրանկովսկի, Պոլտավայի, Չերկասիի և Չեռնովցիի մարզերում: Այդ չորս մարզերի գծով մսի փոնդերի հավելումը կազմել է մոտ 20 հազար տոննա: Բելոռուսիայի մարզերը տեղական մատակարարման բարելավման համար լրացուցիչ արտադրել են 25 հազար տոննա միս և 260 հազար տոննա կաթ: Նույնը կարելի է ասել Մերձբալթիկայի հանրապետությունների, ՌՍՖՍՀ-ի Կուրգանի, Օրենբուրգի, Սարատովի, Ուլյանովսկի և մի շարք ուրիշ մարզերի մասին:

Հարկավոր է ամեն կերպ պաշտպանել մարզային, երկրամասային և հանրապետական կազմակերպությունների ձգտումը հանրային սեկտորում գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման հաշվին գերազանցելու հնգամյակի պլանային առաջադրանքները և դրա հիմքի վրա ապահովելու պետական փոնդերին հատկացվող առաքումների անվերապահ կատարումը և կտրուկ բարելավել տեղական բնակչության մատակարարումը: Սա գլխավոր ուղղությունն է: Կոլտնտեսությունները և սովխոզները պետք է ավելացնեն այն ներդրումների հատույցը, որոնք վերջին տարիներին հատկացված են գյուղի զարգացմանը:

Բայց հարկավոր է օգտագործել բոլոր ռեզերվները: Կրկին պետք է վերադառնալ անձնական օժանդակ տնտեսության դերի հարցին: Այն տարբեր ձևով են հասկանում տեղերում և տարբեր կերպ են վերաբերվում անձնական օժանդակ տնտեսության հնարավորությունների օգտագործմանը:

Ահա մեկ օրինակ: Օմսկի մարզում անձնական տնտեսություններում վերջին տասը տարում մսի արտադրությունն ավելացել-հասել է 27-ից 60 հազար տոննայի կամ աճել է 2,2 անգամ: Այստեղ գյուղական վայրերում ապրող փաստորեն ամեն մի ընտանիք զբաղվում է խոշոր եղջերավոր անասունների, խոզերի ու թռչունների բուծմամբ: Բնակչությանը համակողմանի օգնություն է ցույց տրվում մատղաշով, անասնակերով, համապատասխան սպասարկումների տրամադրումով: Անցյալ տարի կոոպերացիան բնակչությունից գնեց 20 հազար տոննա միս: Մարզի շուկաներում թարմ մսի մեկ կիլոգրամի գները չեն անցնում 3,5 ռուբլուց:

Իսկ ահա այլ կարգի օրինակներ: Արդյունաբերական և ագրարային մեծ պոտենցիալ ունի Վլադիմիրի մարզը: Եվ, այդուհանդերձ, անցյալ տարի մարզում բնակ-

չության մեկ շնչի հաշվով արտադրվեց ընդամենը 46 կիլոգրամ միս (սպանդային քաշով): Դրա հետևանքով այստեղ իրացվող մսամթերքների մեկ հինգերորդ մասը բերվում է երկրի ուրիշ ռեգիոններից: Ավելի լավ չէ կաթնամթերքների ու մսամթերքների մատակարարման վիճակը այնպիսի խոշոր գյուղատնտեսական մարզերում, ինչպիսիք են Վինիցայի, Կիրովոգրադի, Նիկոլաևի, Յարոսլավլի մարզերը:

Տեղական նախաձեռնության հիման վրա կարելի է շատ բան անել ոչ միայն գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման համար, այլև սննդի արդյունաբերության զարգացման համար: Ինչու՞, ասենք Ուզբեկստանում, Կիրգիզիայում, Տաջիկստանում, Թուրքմենիայում հումքի անչափ հարուստ ռեսուրսների պայմաններում հրուշակեղենի 25—50 տոկոսը բերվում է ուրիշ հանրապետություններից: Տեղական արտադրության հաշվին ընդամենը 30 տոկոսով է ապահովվում Ղազախստանի բնակչության մատակարարումը պտուղ-բանջարեղենի պահածոներով, իսկ մնացած ամբողջը ներբերովի է: Դա ինչի՞ նման է:

Ընկերնե՛ր: Առաջիկա երկու-երեք տարում հարկավոր է բավարարել բնակչության պահանջմունքները այգեհողամասերի և բանջարանոցների հարցում: Ժամանակն է դադարել վկայակոչելու հողերի պակասությունը: Դա չի համապատասխանում իրականությանը, հող կա: Դե, իսկ այնտեղ, որտեղ ազատ հողերը իրոք քիչ են, հարկավոր է դիմել կոլտնտեսություններին, սովխոզներին, ձեռնարկություններին պատկանող հողերի մի մասի հատկացման: Եկեք վերջնականապես պայմանավորվենք. հարկավոր է լիովին բավարարել աշխատավորների բոլոր պահանջմունքները, այս գործում վերացնել անհիմն սահմանափակումներն ու խոչընդոտները:

Կարծում եմ, հարկավոր է ավելի արագորեն լուծել նաև երկրի մի շարք գյուղական շրջաններում, առանձնապես ոչ սևահողային գոտում տարիներ շարունակ, իսկ երբեմն էլ տասնամյակներ շարունակ դատարկ մնացող տների ու չմշակվող տնամերձ հողամասերի օգտագործման հարցը: Այսօր լքյալ տների թիվը հասել է գրեթե 800 հազարի: Դրանց շուրջը լքյալ հող է:

Հողի և շինությունների նկատմամբ նման վերաբերմունքը մարդիկ չեն հասկանում: Նրանք Կենտկոմին, մյուս կազմակերպություններին ուղարկած իրենց դիմումներով խնդրում են թույլ տալ ձեռք բերել այդ տները, օգտագործել հողը: Կարծում եմ, ճիշտ կլինի, եթե կոլտնտեսությունները և սովխոզները քաղաքաբնակներին վարձով տան լքյալ տները՝ տնամերձ հողամասերով հանդերձ: Եվ դա շատ դեպքերում կարելի կլինի անել պայմանագրային հիմունքներով, որպեսզի այդ հողերը օգտագործվեն գյուղատնտեսական մթերքների արտադրության համար:

Պարենային պրոբլեմի լուծման գործում դանդաղաշարժության օրինակ է ծառայում նաև գյուղատնտեսական հումքի փոխադրման, պահպանման ու վերամշակման գործում տիրող վիճակը: Կուսակցության XXVII համագումարում ընդգծվեց, որ գյուղատնտեսական հումքի կորուստների վերացումը թույլ կտար սպառման ռեսուրսներն ավելացնել 20—30 տոկոսով, տնտեսել զգալի միջոցներ: Թվում է, սա չորրորդ դասարանի աշակերտին մատչելի թվաբանություն է:

Սակայն 1986 թվականին ՍՍՀՄ պետագրոարդը, ձկնատնտեսության մինիստրությունը և հացամթերքների մինիստրությունը չեն օգտագործել վերամշակող ճյուղերի զարգացմանը հատկացված 450 միլիոն ռուբլի միջոցներ:

Խորամուխ եղեք, ընկերներ, մի այսպիսի փաստի մեջ. այդ ճյուղերի գծով շինարարության պլանը չի կատարել միութենական և ինքնավար հանրապետությունների, երկրամասերի և մարզերի մեծ մասը: Ահա ձեզ ակնբախ վկայություն այն բանի, թե մենք ինչպես ենք վերաբերվում կենսականորեն կարևոր պրոբլեմի լուծմանը: Ստացվում է, որ այն արտադրանքը, որի ստեղծման համար պայքարում ենք, կշարունակենք փչացնել, որովհետև դրա համար չեն բավականացնում ոչ պահեստները, ոչ էլ վերամշակող ձեռնարկությունների կարողությունները, իսկ հետո կորուստները կսկսենք հատուցել ներմուծման հաշվին: Բավական է նման բաներին անվրդով նայել: ՍՍՀՄ պետագրոարդը (ընկ. Վ. Ս. Մուրախովսկի) տեղական մարմինների հետ միասին պետք է պարզի, թե ինչու է այդպես ստացվում, և, որտեղ հարկավոր է, տարրական կարգուկանոն հաստատի, իսկ գլխավորն է՝ պահպանման ու վերամշակման պրոբլեմի շուտափույթ և հիմնավոր լուծման հաստատ կուրս վերցնի:

Պետք է նշեմ, որ ամբողջ ասվածը շատ լուրջ խորհրդածությունների ծնունդ է տալիս: Վերջին տարիներս մեզ մոտ ուժեղ կերպով զարգացել է խնամառուականությունը պարենային հարցերի լուծման գործում: Շատ ռեգիոնների ղեկավարներ թե-



թևամտորեն էին մոտենում այդ գործին: Կերը պակասում է՝ հեռագրեր են ուղարկում Կենտկոմին ու կառավարությանը, գյուղատնտեսական մթերքների ռեսուրսներն են պակասում՝ նորից հեռագրում են կենտրոն:

Ես, իհարկե, հեռու եմ ամեն ինչ մի գույնով պատկերելու և պրոբլեմը պարզունակ դարձնելու մտքից: Շատ դժբախտություններ կապված են երկրի գործերի ընդհանուր վիճակի հետ, բայց, այնուամենայնիվ, այդ հարցերի լուծման գործում մեր շատ կադրերի մեջ իշխում է խնամառուականության ոգին:

Ընդհանրապես, ընկերներ, քաղբյուրոն այսպես է համարում. մենք ռեալ հնարավորություններ ունենք մոտակա 2—3 տարում լրջորեն փոխելու պարենի մատակարարման վիճակը:

Կյանքը տալիս է ապշեցուցիչ օրինակներ, որոնք վկայում են հսկայական ռեզերվների մասին, որ կան ամենուրեք: Բազմաթիվ փաստերը վկայում են ինչպես աշխատանքի արտադրողականության, այնպես էլ գյուղատնտեսական արտադրության աճի տեմպերի գծով առաջ պոկվելու հնարավորության մասին: Դա ապացուցեցին համեմատաբար վերջերս ստեղծված ինտենսիվ աշխատանքի կոլեկտիվները, որոնց երկար ժամկետով ամրացվել են հողեր և արտադրության այլ միջոցներ: Անցյալ տարի այդ կոլեկտիվներում յուրաքանչյուր մարդ միջին հաշվով ստացավ 700—800 տոննա հացահատիկ, իսկ ընդհանուր արտադրանքը կազմեց 70—100 հազար ռուբլի և ավելի:

Ցավոք, այդպիսի կոլեկտիվներ դեռ քիչ են: Բավականաչափ լայնորեն չի տարածվում նաև ընտանեկան կապալը, թեև աշխատանքի կազմակերպման ու վարձատրման այդ ձևերի արդյունավետությունը բավականին բարձր է:

Իհարկե, արտադրանքի արտադրության արագ ավելացման համար հարկավոր են և՛ լավորակ տեխնիկա, և՛ քիմիական միջոցներ, և՛ աննպաստ պայմանների հանդեպ դիմացկուն սորտեր: Բայց առաջին հերթին անհրաժեշտ է գործի համար պատասխանատու մարդ, որն անչափ շահագրգռված լինի իր աշխատանքի արդյունքներով:

Մենք երկար էինք փորձում էկոնոմիկան ղեկավարել ոգևորության հիման վրա, երբեմն էլ հրամանի ուժով, բայց մոռանում էինք լենինյան այն ցուցումները, որ արտադրության աճը կարող է ապահովվել անձնական շահագրգռվածությամբ, նյութական շահագրգռվածությամբ, ոգևորության օգնությամբ:

Հատկանշական է, որ Նովոսիբիրսկի մարզի ինտենսիվ աշխատանքի կոլեկտիվների առաջին մասնակիցներ՝ Օրդինսկոյեի շրջանի «Բոլշևիկ» կոլտնտեսության անդամներ Կոժուխով եղբայրներն ասում են, որ իրենց այդպիսի կոլեկտիվի մեջ են հրապուրում ոչ միայն բարձր աշխատավարձը, այլև ոչ պակաս չափով ինքնուրույնությունը, իրենց մարդկային նշանակալիության ըմբռնումը, հպարտությունն այն բանի համար, որ իրենք շատ կարևոր գործ են կատարում:

Եթե այսօր մեր երկրի ունեցած բարձրարտադրողական տեխնիկային և մյուս ռեսուրսներին ավելանա բարձր կազմակերպված, շահագրգիռ, ինտենսիվ աշխատանքի համար ծավալվող զանգվածային շարժումը, ապա գործն ավելի լավ կընթանա: Կյանքը ցույց է տալիս, որ բոլոր շրջաններում և մարզերում կան մարդիկ, որոնք ընդունակ են ապահովել այդ բեկումը:

Ահա օրինակներ: Պսկովի մարզի Պիտալովոյի շրջանի «Արտյոմովսկի» սովխոզի մեխանիզատոր, ՍՄԿԿ-ի անդամ Ս. Ա. Վոլոչենկին դիմել է սովխոզի դիրեկցիային, խնդրելով իրեն հող առանձնացնել և բտելու համար տալ հորթեր: Պայմանագրով նրան ամրացվել են 40 հեկտար հանդակներ, որից տասը հեկտարը՝ վարելահողեր, քսանը հեկտարը՝ խոտհարքներ: Ս. Ա. Վոլոչենկին վերականգնեց դուրս գրված կոմբայնը, երկու տրակտորը, նորոգեց լքված հորթանոցը, որտեղ տեղավորեց 20 հորթերը:

Աշխատանքում նրան օգնում են որդին ու դուստրը, որոնք սովորող են, և աշխատանքից հետո՝ կինը, որը սովխոզի հաշվապահն է: Ամբողջությամբ վերցված տարվա ընթացքում նախատեսված է ստանալ 11 տոննայից ավելի միս: Եկամուտը կգերազանցի 31 հազար ռուբլուց:

Սովխոզի տրամադրած մատղաշի, պարարտանյութերի, սերմացուի, վառելանյութի ու մյուս ռեսուրսների համար վճարումները ներտնտեսական գներով կկազմեն 23 հազար ռուբլի, վաստակը 8 հազար ռուբլի:

Կարծում ենք, ընկերներ, նման մոտեցումը կօգնի առաջ մղելու ոչ սևահողային գոտու գյուղերը: Չէ՞ որ այնտեղ այնքա՞ն լքված հողեր կան: Երբ դիսկուսիա էր տե-

դի ունենում կոլեկտիվացման ուղիների մասին, արդեն այն ժամանակ ասվում էր, որ խոշոր կոլեկտիվ տնտեսությունները մեծ հնարավորություններ են ընձեռում տեխնիկայի, պարարտանյութերի, գիտության նվաճումների կիրառման համար, բայց իրենց մեջ հողից գյուղացու կտրվելու վտանգ են պարունակում: Իսկ մյուս կողմից փոքր հողամասերի վրա գտնվող ագարակային տնտեսությունները աշխատողին կապում են հողին, բայց հնարավորություններ չեն ստեղծում գիտության ու տեխնիկայի նվաճումները առավելագույնս օգտագործելու համար:

Մեր երկրում ստեղծվել և գործում են խոշոր կոլտնտեսություններ ու սովխոզներ, որոնք ունեն նյութատեխնիկական ամուր բազա, փորձառու մասնագետներ: Այդ պայմաններում կարևոր է հմտորեն կազմակերպել կոլեկտիվ, ընտանեկան կապալը պայմանագրերի հիման վրա, առանձին աշխատավորների շահերը ավելի սերտորեն շաղկապել կոլեկտիվի շահերի հետ, հողի և մյուս արտադրամիջոցների նկատմամբ հոգատարության հետ: Մի՞թե դա հակասում է սոցիալիզմի սկզբունքներին, մի՞թե աշխատանքի այդ մեթոդը կարող է փչացնել աշխատավորին: Ավելի շուտ հողագործին փչացնում էր անցյալի պրակտիկան, երբ անփույթ աշխատանքը ծածկվում էր բյուջեի հաշվին:

Գործի նկատմամբ նոր մոտեցումը արդյունավետ աշխատանքի համոզիչ օրինակներ է տալիս: Այդ նույն Պիտալովոյի շրջանում կուսակցական կազմակերպությունը վերջերս գլխավորեց երիտասարդ առաջին քարտուղար ընկ. Ն. Ն. Վորոբյովը: Շրջանի կոմունիստները գիտնականների օգնությամբ միջոցառումներ մշակեցին տնտեսությունների էկոնոմիկան բարձրացնելու համար: Պատերազմից հետո շրջանն ուներ 46 հազար բնակիչ, այժմ մնացել է 17 հազար: Թվում էր, թե էլ ով է աշխատելու: Կշռադատեցին իրավիճակը, որոշեցին լայնորեն ներդնել կոլեկտիվ կապալը:

Շրջանի կոլտնտեսությունների ու սովխոզների ութ ֆերմաներ այս տարվա սկզբից գործում են ընտանեկան կապալով: Հինգ ամսում նույնքան կերի դեպքում կենդանիների քաշաճը կրկնապատկվեց և հասավ օրական 800—1000 գրամի: Շրջանի դաշտավարության գրեթե 40 տոկոսը փոխադրվել է աշխատանքի կազմակերպման փոքրխմբակային ձևերի: Գարնանացանը կատարվեց 6 օրում՝ սովորական 15—18 օրվա փոխարեն: Շրջանային կազմակերպությունները, տնտեսությունների ղեկավարները հրաժարվել են հրամաններից, պարտադրումներից, աշխատանքի ընթացքի խիստ վերահսկումից: Ղեկավարման նման մեթոդները այժմ պարզապես հարկավոր չեն:

Եվս մի օրինակ: ՍՄԿԿ Կենտկոմի անդամության թեկնածու Լիդիա Դմիտրիևնա Բոիզգան ամուսնու հետ Ժդանովի անվան առաջավոր կոլտնտեսությունից փոխադրվեց Բրեստի մարզի Բրեստի շրջանի «Իլյիչի հիշատակը» կոլտնտեսության հետ մնացող ֆերմա և երկու տարի շարունակ գլխավորում է վեց մարդուց բաղկացած կապալային օղակը: Այդ օղակին ամրացված են հարյուր կաթնատու կով, 50 հեկտար արոտավայր: Կովերին կթում է միայն Լիդիա Դմիտրիևնան, կերը կուտակում և անասուններին արածեցնում են ամուսինն ու դուստրը: Երկու տարում յուրաքանչյուր կովի կաթնատվությունը բարձրացել է՝ 2917 կիլոգրամից հասնելով 5580 կիլոգրամի:

Նման օրինակներ կան ամենուրեք: Պավլոդարի մարզի Ուսպենսկի շրջանի Պանֆիլովի անվան կոլտնտեսությունում 1983 թվականին ստեղծվել էր խոշոր եղջերավոր անասունների մատղաշի բտման օղակ: Օղակի և կոլտնտեսության վարչության միջև պայմանագիր է կնքվել: Օղակի կազմում կա երեք մարդ՝ օղակավար Ա. Յա. Ռուդկոն, որն առաջին կարգի մեքենավար-տրակտորիստ է, ինչպես նաև նրա դուստրն ու փեսան: Ահա 1986 թվականի ցուցանիշները. բտվել են 563 գլուխ, միջին օրական քաշաճը կազմել է մեկ կիլոգրամից ավելի: Օղակի յուրաքանչյուր անդամի հաշվով արտադրվել է 167 հազար ռուբլու մթերք: Մեկ ցենտներ քաշաճի ինքնարժեքը 95,5 ռուբլի է, իսկ կոլտնտեսությունում՝ 155 ռուբլի, շրջանում միջին հաշվով՝ 230 ռուբլի: Օղակի մեկ անդամի ամսական միջին աշխատավարձը 534 ռուբլի է: Ուրեմն և բարով վայելեն: Քանի որ այն վճարվում է աշխատանքի դիմաց, բխում է իրական արտադրանքից:

Ես հարց եմ տալիս. ի՞նչ է, դա խարխլե՞ց կոլտնտեսային կարգերը: Ո՛չ: Հենց սա էլ սոցիալիզմն է՝ կենդանի, ստեղծագործական, աշխատավորական: Քանի որ ժողովուրդը լայնորեն է ներգրավվում սոցիալիստական շինարարության մեջ, աշխատանքի կոլեկտիվ ձևերի միջոցով կոլտնտեսության և սովխոզի հետ աշխատավորի կապը էլ ավելի է ամրապնդվում: Եվ մարդիկ իրենց բարօրությունը վաստակում են ազնիվ աշխատանքով:

Մինսկի մարզի Լյուբանսկի շրջանի «Զագալսկի» սովխոզում կարտոֆիլի մշակ-



ման մեքենայացման օղակի մեջ են մտնում չորս մարդ՝ օղակավար Ի. Գ. Մինիցկու գլխավորությամբ, որը երեք աստիճանի աշխատանքային փառքի շքանշանի ասպետ է: Օղակը 60 հեկտար տարածություն է մշակում: Օղակը կապալով աշխատում է երկու տարի: 1986 թվականին բերքատվությունը կազմել էր հեկտարից 383 ցենտներ: Օղակը հասել է կարտոֆիլի ամենացածր ինքնարժեքի՝ ցենտների դիմաց 1,5 ռուբլի (այնինչ հանրապետությունում 9 ռուբլի է), ամենացածր աշխատածախսումների՝ մեկ ցենտների համար 0,54 մարդ-ժամ (այնինչ միջին հաշվով հանրապետությունում կազմում է 2 մարդ-ժամ):

Բանջարեղենի մշակման ընտանեկան կապալը զարգանում է նաև Տերնոպոլի մարզում: Այս տարի Զալեշչիկի շրջանում երեք՝ Բոգդան Խմելնիցկու անվան, «Ոսկե հասկ» և «Կոմունիստ» կոլտնտեսություններում տնամերձ հողամասերում աճեցնելու են 15 հազար տոննա պոմիդոր, որից 5 հազար տոննան վաղահաս տեսակի՝ 1,5 տոննայի փոխարեն, որ այդ տնտեսությունները իրացրել են անցյալ տարի:

Նույնն է կատարվում նաև շրջկենտրոնում: Կոլտնտեսությունները սածիլներ, թաղանթ, պարարտանյութեր, բույսերի պաշտպանության միջոցներ, ոռոգման պոմպեր են հատկացրել շատ ընտանիքների, ապահովում են տարայով: Վաղահաս պոմիդորներին հատկացնելով 15—20 հարյուրերորդական, մարդիկ յուրաքանչյուր քառակուսի մետրից հավաքում են 7—8 կիլոգրամ որակյալ մթերք:

Կրեմենեցի շրջանում 600 ընտանիքներ կապալով եղակ են աճեցնում իրենց բանջարանոցներում, պայմանագրեր կան այս տարի 800 տոննա հատապտուղ գնելու համար: Ընդհանուր հաշվով, ինչպես հաղորդում են, ընթացիկ տարում մարզում բանջարեղեն, տեխնիկական կուլտուրաներ մշակելու, անասուններ բտելու պայմանագրեր են կնքել մոտ 25 հազար ընտանիքներ:

Նման օրինակները, ընկերներ, շատ են: Եվ դրանք բոլորը վկայում են գյուղատնտեսական արտադրության արագ աճի հնարավորությունը, եթե մենք այդ գործում ընդգրկենք բոլոր ռեզերվները, բոլոր աշխատավորներին, բոլոր ընտանիքներին, ձերբազատենք մարդկանց նախաձեռնությունը: Մինչդեռ, հիմա ի՞նչ է ստացվում: Գյուղի բնակիչը ամեն մի մանրուքի համար խանութ է շտապում, դարձել է փաստորեն պարենի նույնպիսի գնորդ, ինչպես քաղաքաբնակը: Գյուղական ընտանիքների 54 տոկոսը կով չունի, 33 տոկոսը՝ առհասարակ ոչ մի տեսակի անասուն:

Մենք բազմաթիվ փաստերով համոզվել ենք էլ ավելի կարևոր բանում. մարդու ձերբազատված նախաձեռնությունը, կազմակերպամոլությունից, գերկենտրոնացումից հեռանալը թույլ են տալիս նույնքան ռեսուրսներով վերընթաց ապահովել պարենային ռեսուրսների ավելացման գործում:

Ընդհանրապես, գյուղատնտեսության մեջ հսկայական պոտենցիալ է կուտակված: Այժմ հարկավոր է այն ակտիվորեն օգտագործել հանրային խոշոր տնտեսության հնարավորությունները կոլեկտիվ և ընտանեկան կապալի հնարավորությունների հետ շաղկապելու միջոցով:

Մյուս սուր և անհետաձգելի խնդիրը ԲՆԱԿԱՐԱՆԱՅԻՆ ՊՐՈԲԼԵՄԻ լուծումն է: Ինչպես ես արդեն ասացի, կենտրոնի մակարդակով հնարավորություններ են գտնված երկրում բնակարանային շինարարության տեմպերի արագացման համար: Նախատեսվում է լրացուցիչ կապիտալ ներդրումների հաշվին տասներկուերորդ հնգամյակում բնակարանային շինարարության ծավալները տասնմեկերորդ հնգամյակի համեմատությամբ մեծացնել 60 միլիոն քառակուսի մետրով: Իսկ հնգամյակում ընդհանուր առմամբ բնակարաններ կստանան ավելի քան 15 միլիոն ընտանիքներ:

Բայց սա բոլորը չէ: Ոչ պակաս, գուցե և ավելի մեծ հնարավորություններ ունեն ձեռնարկությունները, կոլտնտեսությունները, սովխոզները, քաղաքները, օկրուգներն ու շրջանները, մարզերը, երկրամասերն ու հանրապետությունները: Տեղական շատ մարմիններ, ես սա ուզում եմ գոհունակությամբ նշել, գործնականորեն են ձեռնամուխ եղել համագումարի առաջադրած խնդրի լուծմանը՝ մինչև 2000 թվականը փաստորեն յուրաքանչյուր ընտանիքի ապահովել առանձին բնակարանով կամ անհատական տնով: Ընդ որում արդեն քիչ չեն նրանք, ովքեր հնարավորություն են փնտրում այդ խնդիրը լուծելու նաև ավելի կարճ ժամանակամիջոցում: Դա ճիշտ է, դա պետք է ամեն կերպ պաշտպանել:

Բայց պետք է, ընկերներ, անկեղծորեն ասել, որ բնակարանային շինարարության մեջ արմատական բեկում դեռ չի կատարվել, և դա զգալի չափով բացատրվում է ոչ միայն միջոցների պակասով, այլև կուսակցական, սովետական և տնտեսական շատ մարմինների, ղեկավար կադրերի վերաբերմունքով: Ընդհանուր խո-

սակցություններին միշտ չէ, որ հաջորդում են նախաձեռնողական, հաստատակամ աշխատանքը, այդ կենսական խնդրի լուծման համար ռեզերվների որոնումը:

Հաճախ հարկ է լինում լսել, թե կարողությունները չեն բավականացնում բնակարանային շինարարության հարաճուն ծավալների կատարման համար: Բայց նման բացատրությունը ոչ ոքի չի կարող բավարարել. նախ, եթե կարողությունները չեն բավականացնում, ապա դրանք պետք է ստեղծել, և երկրորդ, այժմ երկրում տնաշինական ձեռնարկությունների կարողությունների 20 տոկոսը ընդհանրապես չի օգտագործվում: Սրանք երկրի մասշտաբով միջին տվյալներ են: Իսկ Ադրբեջանում, Հայաստանում, Ղազախստանում, Թուրքմենիայում, Ուզբեկստանում այդ կարգի ձեռնարկությունները բեռնավորված են ընդամենը 65—70 տոկոսով, Կրասնոդարի, Խաբարովսկի երկրամասերում, Իվանովոյի, Պենզայի, Ռոստովի, Սմոլենսկի, Տաշքենդի, Ցելինոգրադի մարզերում, ինչպես նաև Բուրյաթիայում և Կաբարդինա-Բալկարիայում՝ 50—65 տոկոսով:

Եվս մի հարց: Մի՞թե կարելի է հասկանալ և արդարացնել այն իրավիճակը, երբ երկրում բնակարանները, շինանյութերը չեն բավականացնում, իսկ շինարարական ինդուստրիայի ձեռնարկությունների մեծ մասը աշխատում է մեկուկես հերթափոխով, շաբաթական երկու հանգստյան օրով: Դրա հետևանքով կորչում է օրացուցային ժամանակի շուրջ 50 տոկոսը: Իսկ մի՞թե դրանց չի կարելի փոխադրել գործունեության անընդհատ ցիկլի: Չէ՞ որ այդպես են աշխատում մետալուրգները, քիմիագործները, էներգետիկները, սննդի բնագավառի աշխատողները: Բազմահերթ աշխատանքի ռեժիմի են անցնում մեքենաշինարարները:

Բայց մեզ մոտ ոչ միայն վատ են օգտագործվում տնաշինական կոմբինատների կարողությունները: Երկրում աղյուսի գործարանները նույնպես բեռնավորված են ընդամենը 80 տոկոսով: Եվ դա այն դեպքում, երբ ամենուրեք աղյուսի պակաս է զգացվում: Աղյուսի գործարանները վատ են օգտագործվում Ռուսաստանի Ֆեդերացիայում, Ուկրաինայում, Ղազախստանում: Օրինակ, Ալթայի և Կրասնոյարսկի երկրամասերում այդ գործարանները բեռնավորված են ընդամենը 57—69 տոկոսով:

Եթե մեզ իսկապես անհանգստացնում է բնակարանային պրոբլեմը, մի՞թե մենք կարող ենք հաշտվել մի այնպիսի երևույթի հետ, երբ շատ մինիստրություններ և գերատեսչություններ խոշորապանել տների թողարկման կարողությունների մեծացմանը հատկացված կապիտալ ներդրումները իրացրել են ընդամենը 70—80 տոկոսով:

Կարծում եմ, մենք այսօր իրավունք ունենք պլենումում պահանջ ներկայացնելու միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմների և Մինիստրների խորհուրդների, մինիստրությունների և գերատեսչությունների՝ առանձնապես շինանյութերի արդյունաբերության մինիստրության (ընկ. Ս. Ֆ. Վոենուշկին), անտառային, ցելյուլոզի-թղթի ու փայտամշակման արդյունաբերության մինիստրության (ընկ. Մ. Ի. Բուսիգին) հասցեին՝ վճռաբար փոխելու վերաբերմունքը բնակարանային շինարարության նկատմամբ:

Եկեք, ընկերներ, կշռադատենք, խորհրդակցենք աշխատավորների հետ: Եթե մենք արդեն ձեռնամուխ ենք եղել կենսականորեն կարևոր այդ պրոբլեմի լուծմանը, ապա այն պետք է հաղթահարել, ինչպես ասում են խմբովի:

Ես նույնիսկ այսպես կասեի. աշխատավորները մեզ չեն հասկանա, եթե մենք, ծավալելով վերակառուցումը, ռեալ հնարավորություններ չգտնենք բնակարանային հարցի լուծումն արագացնելու համար: Բնակելի տների շինարարությունը համաժողովրդական խնդիր է: Հենց այս դիրքերից էլ պետք է դրան մոտենալ:

Հիմա, ընկերներ, ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՍՊԱՌՄԱՆ ԱՊՐԱՆՔՆԵՐԻ ԵՎ ՍՊԱՍԱՐԿՄԱՆ ՈԼՈՐՏԻ մասին, սպառողական շուկայում տիրող վիճակի մասին: Այս հարցի նշանակությունը հաշվի առնելով է մշակված պետական նպատակային ծրագիրը: Բայց, ինչպես ասում են, դա ինքնին դեռ պրոբլեմի լուծում չէ:

Պետք է ապահովել դրա իրականացումը գործնականորեն: Ցավոք, հարկ է արձանագրել, որ այդ շատ կարևոր սոցիալական խնդրի նկատմամբ վերաբերմունքը բնավ էլ միատեսակ չէ: Ոմանք, իսկապես, օգտվելով ստեղծված նախադրյալներից, ակտիվորեն որոնում են կատարում, ավելացնում ապրանքների արտադրությունն ու սպասարկումները: Կարելի է վկայակոչել Բելոռուսիայի, Լիտվայի, Էստոնիայի, Լենինգրադի, Ուլյանովսկի և ուրիշ մարզերի օրինակը: Նրանց փորձը հայտնի է երկրում:

Սակայն շատերը շարունակում են գործել հին, պարզունակ սխեմաներով, հույս



դնելով հիմնականում ոչ թե սեփական ջանքերի, այլ կենտրոնի օգնության վրա, ուրիշ ռեգիոններից ներբերման վրա: Իհարկե, չեմ ուզում ասել, թե մեզ մոտ յուրաքանչյուր մարզ կամ հանրապետություն պետք է բնատնտեսություն հիմնադրի: Բայց երբ դադարում են մտածել տեղական ռեսուրսների օգտագործման մասին և ապավինում միայն դրսից ստացվածին, ապա դա ոչ այլ ինչ է, եթե ոչ դարձյալ խնամառուականություն: Եվ այս երևույթը բավական լայն տարածում է գտել:

Չեմ կարծում, թե պլենումում պետք է խորանալ պրոբլեմի բոլոր մանրամասների մեջ, բայց երբ ծանոթանում ես այն բանին, թե մի շարք հանրապետություններ, երկրամասեր ու մարզեր ամենօրյա պահանջարկ վայելող ինչպիսի ապրանքներ են ներմուծում ուրիշ ռեգիոններից, զարմանում ես, թե մեր որոշ աշխատողներ ինչքան են կորցրել ժողովրդի կարիքների ապահովման համար պատասխանատվության զգացումը:

Յոթ սարի հետևից բերում են ամենատարրական բաները, ներառյալ այն առարկաները, որ առանց որևէ դժվարության կարելի է արտադրել տեղում: Բերում են այն, ինչի համար հարկավոր չեն ինչ-որ ֆոնդավորվող ռեսուրսներ, նոր տեխնիկա, հատուկ արտադրական կարողություններ և պատրաստված կադրեր: Մենք պետք է, ընկերներ, այդ արատավոր պրակտիկան հասարակայնության դատին ներկայացնենք: Մամուլը, ռադիոն, հեռուստատեսությունը պետք է սիստեմատիկաբար ցույց տան, թե այդ խնդիրները տեղերում ինչպես են լուծում տնտեսական և սովետական մարմինները: Թող բոլորը ճանաչեն թե նրանց, ովքեր իրոք հոգատար վերաբերմունք են ցույց տալիս մարդկանց, և թե նրանց, ովքեր անտարբեր, անձեռներեց են: Աշխատավորները պետք է ամեն ինչ իմանան և վերահսկողության տակ պահեն այդ կարևոր աշխատանքը:

Կենտկոմի պլենումում պետք է ասել նաև այն մասին, որ բնավ ոչ բոլոր մինիստրություններն են շրջվել դեպի ժողովրդական սպառման ապրանքների արտադրության կարիքները: 18 ճյուղեր չեն կատարել կուլտուր-կենցաղային և տնտեսական ապրանքների թողարկման անցած տարվա առաջադրանքները: Եվ մասնավորապես այն մինիստրությունները, որ գլխավորում են ընկերներ Է. Կ. Պերվիշինը, Պ. Ս. Պլեշակովը, Վ. Մ. Վելիչկոն, Ա. Ա. Եժևսկին:

Որոշ մինիստրություններում ժողովրդական սպառման ապրանքների արտադրությանը վերաբերվում են ձևականորեն, ինչպես երկրորդական գործի, իսկ տեղ-տեղ էլ դրանք իրենց համար միայն բեռ են համարում: Ընկերները պետք է հասկանան, որ իրենք խորապես մոլորվում են, և ինչքան արագ վերջ դնեն այդ մոլորությանը, այնքան լավ կլինի թե՛ գործի համար և թե՛ իրենց համար:

Մինչև հիմա խոսքն այն մասին էր, որ մեզ անհրաժեշտ են ավելի շատ լավորակ և լավ տեսականու ապրանքներ: Բայց բանը միայն դա չէ: Տեսեք, թե ինչքան փաստեր կան, որոնք վկայում են, որ բնակչությունը վատ է ապահովվում նույնիսկ բավարար քանակությամբ եղած ապրանքներով: Ու եթե դրան ավելացնենք, որ առևտրի շատ հիմնարկություններում ու ձեռնարկություններում պատշաճ կարգուկանոն չկա, ցածր է սպասարկման կուլտուրան, շատ են հերթերը, քանի որ հենց խանութները չեն բավականացնում, բացի դրանից էլ առևտրի ու սպասարկման ոլորտում աշխատանքի ռեժիմը միշտ չէ, որ ենթարկված է քաղաքների և գյուղերի բնակչության աշխատանքի ու կյանքի ռեժիմին, ապա հասկանալի է դառնում, թե ինչու են այդքան հաճախակի կշտամբանքները նրանց աշխատանքի առնչությամբ: Այս հարցերը տեղական մարմինները պետք է լուծեն ամենամոտ ժամանակներս:

Երկրում վատ են օգտագործվում սպառողական կոոպերացիայի արտադրական ու մթերողական գործունեության միջոցով ապրանքային ռեսուրսների համալրման հնարավորությունները: Այս առթիվ շատ են կշտամբանքները:

Այդ համակարգը առայժմ դանդաղ է շրջվում, և շատ բան, ինչ կարելի է մթերել բնակչությունից և կոոպերատիվ կազմակերպությունների միջոցով հասցնել սպառողին, պարզապես կորչում է: Այժմ մենք օգնություն ենք ցույց տվել ցենտրոսոյուզին: Պետք է պաշտպանել նրա ջանքերը նաև տեղական սովետական մարմինների գծով:

Ընկերներ, մենք չպետք է հաշտվենք կոմունալ-կենցաղային սպասարկման թերացումների, մարդատար տրանսպորտում, կապում, տուրիզմում, ֆիզկուլտուրայում ու սպորտում տիրող անբավարար իրավիճակի հետ: Մի՞թե կարելի է նորմալ համարել, երբ քաղաքում և գյուղում բնակելի տների, կենցաղային տեխնիկայի նորոգումը, կոշիկի և հագուստի կարումը շատ բարդ պրոբլեմ են դառնում:

Պատահական չէ, որ այդ ոլորտում առաջացել է յուրատեսակ «ստվերային էկոնոմիկա»: Խորհեք այս թվի վրա. կենտվիճվարչության մարմինները հաղորդում են, որ, իրենց հաշվարկներով, բնակչությունը սպասարկումների դիմաց ամեն տարի մասնավոր անձանց վճարում է մոտ 1,5 միլիարդ ռուբլի, իսկ զանազան կարգի անաշխատ եկամուտները կազմում են տարեկան ավելի քան հինգ միլիարդ ռուբլի:

Մենք բազմիցս ուշադրություն ենք հրավիրել անտառանյութերի և շինանյութերի հարցում բնակչության պահանջմունքի լրիվ ապահովման անհրաժեշտության վրա: Այդ առթիվ ընդունվել են որոշումներ, բայց թե՛ կենտրոնական և թե տեղական մարմինները դրանք վատ են կատարում:

Կարծում եմ, պլենումում սովետական հասարակության կենսականորեն կարևոր հարցերի այսօրվա քննարկումը դաս ու խթան կդառնա բոլոր աշխատողների համար՝ թե՛ կենտրոնում և թե՛ տեղերում:

Պարենավորման, բնակարանային և բնակչությանն անհրաժեշտ ապրանքների պրոբլեմների լուծումը պետք է մշտապես գտնվի տնտեսական մարմինների տեսադաշտում: Սա լիովին վերաբերում է թե՛ առողջապահությանը և թե՛ նրան, ինչը մենք անվանում ենք էկոլոգիա: Այստեղ տիրող դրությունը անցած երկու տարում գրավում է քաղբյուրոյի ու կառավարության սևեռուն ուշադրությունը: Պետք է ասել, որ բժշկական սպասարկման և մարդու բնակության միջավայրի պահպանության բնագավառում կուտակվել են բացասական շատ երևույթներ: Մենք միջոցներ ենք ձեռնարկում վիճակը բարելավելու համար: Սա առաջնահերթ կարևորություն ունեցող գործ է, պահանջում է ընդհանուրի ուշադրությունը և հսկայական գործնական աշխատանք:

## ԴԵՄՈԿՐԱՏԱՑՈՒՄԸ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ ՎՃՌԱԿԱՆ ՊԱՅՄԱՆՆ Է

Ընկերնե՛ր, կուսակցության Կենտկոմի ապրիլյան պլենումից հետո հաջողվեց հասարակության մեջ ստեղծել բարոյաքաղաքական նոր մթնոլորտ: Ստեղծագործության, որոնման, իրականության ռեալիստական գնահատման մթնոլորտ, այն ամենի դեմ անզիջում պայքարի մթնոլորտ, ինչը խանգարում է կյանքին: Ուստի առաջին հետևությունը, որ բխում է վերջին երկու տարիներից, այն է, որ պետք է ոչ միայն պահպանել և զորավիգ լինել, այլև ըստ ամենայնի խորացնել և զարգացնել երկրում ստեղծված հրապարակայնության, բացախոսության մթնոլորտը, որը յուրաքանչյուր մարդու թույլ է տալիս դրսևորել իր քաղաքացիական դիրքորոշումը, ակտիվորեն մասնակցել հասարակության կենսականորեն կարևոր պրոբլեմների քննարկմանն ու լուծմանը, արագացնել այդ ուղղությամբ ընթացող պրոցեսները:

Փորձը ցույց է տալիս, որ հաջողության են հասնում այնտեղ, որտեղ կուսակցական, սովետական ու տնտեսական մարմինները լիովին են օգտագործում աշխատավորների քաղաքական և հասարակական ուժեղացող ակտիվությունը: Ասեմ անկեղծորեն: Վերակառուցման խնդիրները մենք չենք կարողանա կատարել, եթե հաստատակամորեն և հետևողականորեն չվարենք դեմոկրատացման գիծը: Եկեք վերհիշենք Վ. Ի. Լենինի խոսքերը. «... որքան ավելի խորն է այն վերափոխությունը, որ մենք ուզում ենք կատարել, այնքան ավելի շատ հետաքրքրություն և գիտակցական վերաբերմունք պետք է առաջ բերել դրա նկատմամբ, նորանոր միլիոնավոր և տասնյակ միլիոնավոր մարդկանց համոզել դրա անհրաժեշտության մեջ»: Ահա այսպես լենինաբար մենք պետք է գործենք նաև հիմա:

Սրա հետ մեկտեղ չի կարելի չասել ահա թե ինչ: Մամուլի նյութերը, տեղերում տիրող իրավիճակին ծանոթանալը, ստացվող ինֆորմացիան վկայում են, որ հրապարակայնության, դեմոկրատացման զարգացումը ընթանում է ոչ հեշտորեն, որոշ տեղերում նույնիսկ հիվանդագին կերպով: Որոշ ընկերներ չեն հասկացել և նրանց մեջ վախ է առաջացել դեմոկրատական փոփոխություններից: Այս հարցը այնքան կարևոր է, որ ես կարծում եմ պլենումը կքննարկի և պարզորոշ ու անսասան դիրք կբռնի:

Ըստ այնմ, թե ինչպես է իրագործվում վերակառուցումը, նորացվում մեր հասարակության կյանքի բոլոր կողմերի դեմոկրատացման պրոցեսը, առաջ են գալիս նոր իրողություններ, որոնք մենք չենք կարող, պարզապես իրավունք չունենք հաշվի չառնել:



Մեր մարդիկ այլևս չեն ուզում հաշտվել այն բանի հետ, որ իրենց շահերը շոշափող հարցերը լուծվեն ուրիշների կողմից: Երբեմն դա հանգեցնում է սուր իրավիճակների: Դրանք ի՞նչ են վկայում: Դրանք վկայում են, որ կուսակցական, սովետական և տնտեսական որոշ տեղական մարմիններ, կենտրոնի և տեղերի մեր որոշ ղեկավար կադրեր տակավին չեն սովորել աշխատել ընդլայնվող դեմոկրատիայի պայմաններում: Եվ այդ սովորելը չի կարելի հետաձգել ապագային: Սովորել հարկավոր է համառորեն և հիմա: Կուսակցական կոմիտեներն ու կազմակերպությունները, պետական իշխանության մարմինները պետք է ձեռքը մշտապես պահեն հասարակական կարծիքի զարկերակին, ըստ այդմ ստուգեն ընդունվող որոշումները և իրենց գործողությունները: Մեր ժողովուրդը դեմոկրատացմանը կողմնակից է թե՛ քաղաքականապես և թե՛ պրակտիկորեն:

Քաղաքական աշխատանքի, կազմակերպչական ու գաղափարախոսական գործունեության մեջ նոր մոտեցումների յուրացումը հեշտ չի կատարվում: Ոմանք դժվար են հաշտվում հրապարակայնության հետ, ոմանց էությանը խորթ են քննադատությունը, մամուլի ելույթները, ոմանք առհասարակ վարժվել են կարծելու, թե միայն իրենց կարծիքն է «անսխալական»: Այս ամենին մենք հիմա հանդիպում ենք, և հանդիպում ենք ոչ սակավ: Եկեք նայենք այդ երևույթների արմատը: Դեմոկրատացումից դժգոհ են նրանք, ովքեր վախենում են ընկնել հասարակության հրապարակայնացված վերահսկողության տակ:

Նրանք լավ գիտեն. պետի առջև էլի կարելի է արդարանալ, իսկ ահա ժողովրդի առջև պետք է պատասխան տալ լիովին: Դեմոկրատիան ամեն ինչ դնում է իր տեղը, տեսանելի է դառնում, թե ով ինչ է և ով ինչի է ընդունակ:

Չի կարելի չասել նաև որոշ զգաստացնող հանգամանքների մասին: Ցանկացած մեծ գործում անհնար է ապահովագրվել սխալմունքից: Դա եղել է, կա և կլինի: Հիմա մենք էլ ենք բախվել այնպիսի իրավիճակների, երբ ոմանք դեմ չէին լինի բացախոսության, հրապարակայնության իրադրությունը օգտագործել ամենևին էլ ոչ թե հօգուտ վերակառուցման, հօգուտ զարգացող սոցիալիզմի, աշխատավոր մարդկանց, այլ իրենց նեղ շահադիտական նպատակներին հասնելու համար:

Հարկավոր է պայքարել նման երևույթների դեմ, բայց պայքարել հրապարակավ և բացեիբաց: Դեմոկրատիայի ընդլայնման պայմաններում ապրելն ու աշխատելը նշանակում է ոչ թե վախենալ դիսկուսիաներից, կարծիքների ու դիրքորոշումների բախումներից: Այդ ամենը բնական և անհրաժեշտ է ճշմարտության որոնումներում, առաջացող պրոբլեմների լուծման և մեր առաջընթացի արագացման նպատակով:

Բայց երբ մենք ասում ենք, որ դեմոկրատիան ենթադրում է կենդանի, լայն, պատասխանատու դիսկուսիաներ, տարբեր տեսակետների զուգադիպում, ապա սա նշանակում է, որ չի կարելի դեմոկրատական համարել պայքարի անվան տակ մեկ կիսաճշմարտությունը մի ուրիշով փոխարինելու փորձերը:

Դեմոկրատական չէ, երբ մեկ խմբի պատվախնդրության դեմ, «վերջին ատյանի» ճշմարտության այդ խմբի հավակնությունների դեմ պայքարելու անվան տակ պարտադրում են մի այլ խմբի պատվախնդրությունը, նրա մոլությունները և համակրությունները, սուբյեկտիվիստական տեսակետները: Սրան մենք բախվում ենք թե՛ մասսայական ինֆորմացիայի միջոցների աշխատանքում, թե՛ արվեստի ու գրականության մեջ, գիտական շրջաններում: Այս երևույթը չի շրջանցել նաև կուսակցական, հասարակական կազմակերպություններին:

Բայց ընդհանուր առմամբ այսպես կասեմ. հրապարակայնության, քննադատության ու ինքնաքննադատության պրոցեսը մեզանում ընթանում է առողջ հիմքի վրա: Եվ այդ պրոցեսը հսկայական դեր է խաղում հասարակության բոլոր ուժերը վերակառուցման սկզբունքներով միավորելու, ժողովրդի և սոցիալիզմի շահերից բխող առաջադիմական վերափոխումներ անցկացնելու գործում:

Ընկերնե՛ր, քննարկելով հասարակության հետագա դեմոկրատացման ուղիները, կցանկանայի այդ կապակցությամբ արծարծել վերահսկողության հարցը: Վերջերս ՍՄԿԿ Կենտկոմում կայացած խորհրդակցության մասնակիցներն ասում էին, որ վերահսկողությունը, անշուշտ, հարկավոր է: Բայց ոչ այն վերահսկողությունը, որ կա հիմա: Տնտեսական ոլորտում վերջին տարիներս բացահայտված չարաշահումների, հանցագործությունների փաստերը վկայում են, որ վերահսկողության ստեղծված համակարգը արդյունավետ չէ: Այն ենթարկված է ավելորդ մանրատվածության, վատնում է աշխատաժամանակը, գործից կտրում շատ մարդկանց, խլում անհագին միջոցներ, իսկ գլխավորը՝ ներփակված է գերատեսչական ու տեղայնական շահերի մեջ,

ընկել է, խոր, հիրավի հեղափոխական վերափոխումների անհրաժեշտության առաջ է կանգնեցնում: Այս նպատակով մենք մշակել ենք նոր տնտեսական ստրատեգիա ու ձեռնամուխ ենք եղել դրա իրականացմանը: Փոփոխություններ ենք մտցրել կառուցվածքային և ինվեստիցիոն քաղաքականության մեջ: Ստեղծել ենք նպատակային խոշոր ծրագրեր, որոշել գիտատեխնիկական առաջադիմության հիմնական ուղղությունները:

Վերջին երկու տարում առաջին քայլերն են արվել տնտեսավարման այն նոր մեթոդների յուրացման ճանապարհին, որոնք մշակվել են 70—80-ական թվականների սահմանագծի իրավիճակի վերլուծության և մի շարք խոշոր տնտեսափորձերի հիման վրա:

Բայց, ես կասեի, այստեղ արմատական, հիմնավոր տեղաշարժեր ձեռք չեն բերվել: Արգելակման մեխանիզմը դեռ չի փշրվել և չի փոխարինվել արագացման մեխանիզմով: Հարկ է լինում նրա բացակայությունը առաջվա նման փոխհատուցել արտատնտեսական մեթոդներով, վարչական ճնշմամբ:

Այժմ մեր առջև որպես առաջնահերթ, անհետաձգելի խնդիր ծառացել է էկոնոմիկայի կառավարման ամբողջական, արդյունավետ, ճկուն համակարգի ստեղծումը:

Խնդիրը, ինչպես դուք հասկանում եք, հասարակ չէ: Կառավարման գոյություն ունեցող համակարգը բարդացել է ոչ մեկ օրում, պարունակում է բազմաթիվ շերտեր, որոնք արտացոլում են մեր երկրի պատմության տարբեր ժամանակաշրջանների պայմաններն ու առանձնահատկությունները՝ դրանց բոլոր նվաճումներով, հակասություններով ու դժվարություններով հանդերձ:

Կառավարման ներկա համակարգի հիմքերը գցվել են դեռևս 30-ական թվականներին: Այն դժվարին ժամանակաշրջանում մեր երկիրը, որն ամենևին էլ ամենազարգացածը չէր տնտեսական առումով և գտնվում էր կապիտալիստական աշխարհի հետ դեմ առ դեմ, հայտնվեց տեխնիկատնտեսական հետամնացությունը արագորեն հաղթահարելու, ժողովրդական տնտեսության մեջ կառուցվածքային կտրուկ տեղաշարժեր կատարելու անհրաժեշտության առջև:

Եվ դրանք իրականացվեցին աննախադեպ կարճ ժամկետներում: Նախապատերազմական հնգամյակների տարիներին արդյունաբերական արտադրանքի ծավալը աճեց 6,5 անգամ, և դրա թողարկմամբ Սովետական Միությունը Եվրոպայում չորրորդ տեղից բարձրացավ առաջին տեղը և աշխարհում հինգերորդից՝ երկրորդ տեղը: Արտադրության միջոցներ արտադրող ճյուղերի տեսակարար կշիռը 39,5 տոկոսից բարձրացավ 61 տոկոսի: Արդյունաբերության մեջ բանվորների ու ծառայողների թիվը նախապատերազմական 12 տարիների ընթացքում եռապատկվեց:

Այդ խնդիրները լուծելու համար պահանջվեց շեշտակիորեն մեծացնել կուտակումների բաժինը ազգային եկամտի մեջ: Երկրորդ հնգամյակի սկզբին այն անցնում էր 30 տոկոսից կամ կրկնապատիկ ավելի էր 20-ական թվականների վերջին մակարդակից ու մի քանի անգամ՝ նախահեղափոխական Ռուսաստանի մակարդակից: Պետական բյուջեի միջոցով էր վերաբաշխվում ազգային եկամտի մոտ 60 տոկոսը: Այդ հսկայական ռեսուրսները կենտրոնացված կերպով հատկացվում էին առաջին հերթին ծանր արդյունաբերության զարգացմանը:

Հենց այդ նպատակով էր ստեղծվել կառավարման այն համակարգը, որը հիմնըված էր կոշտ ցենտրալիզմի, աշխատանքի մանրամասն կանոնակարգման, հանձնարարված դիրեկտիվ առաջադրանքների և բյուջետային հատկացումների վրա: Այն առանձնահատուկ պայմաններում այդ համակարգն ապահովում էր կարճ ժամկետներում այնպիսի ստրատեգիական խնդիրների լուծում, որոնց վրա զարգացած կապիտալիստական երկրներում տասնամյակներ էին գնում: Կառավարման կենտրոնացված բնույթը էլ ավելի ուժեղացավ պատերազմի տարիներին: Այն հիմնականում պահպանվեց հետպատերազմյան վերականգնման պայմաններում:

Իհարկե, ամեն ինչում չէ, որ կառավարման այդ բնույթը կարելի է բացատրել օբյեկտիվ պատճառներով: Թույլ էին տրվում նաև սխալ մոտեցումներ, ընդունվում էին սուբյեկտիվիստական կարգի որոշումներ: Դա հարկավոր է տեսնել ու հաշվի առնել արդի պրոբլեմները քննարկելիս: Բայց կառավարման ստեղծված համակարգը տարիներ շարունակ ավելի ու ավելի սուր հակասության մեջ է մտել տնտեսական զարգացման պայմանների ու պահանջմունքների հետ:

Գիտատեխնիկական հեղափոխության բուռն ընթացքը, ժողովրդական տնտեսության կտրուկ բարդացումը, ծանրության կենտրոնը էքստենսիվ մեթոդներից ինտենսիվ մեթոդների, քանակից որակի վրա փոխադրելու անհրաժեշտությունը, սո-



ցիալական պայմանների ազդեցության ուժեղացումը, մարդկային գործոնի դերի կտրուկ աճը տնտեսական կառավարման արմատական վերափոխումներ էին պահանջում:

Տնտեսական կառավարման վերակառուցումը ավելի ու ավելի հրամայաբար է տեղ գտել օրակարգում: Այդ հարցը քննարկվել է գիտական ու հասարակական շրջաններում: Կարող եմ վկայակոչել ակադեմիկոս Վ. Ս. Նեմչինովի հոդվածը «Կոմունիստ» հանդեսում 1964 թվականին: Դեռ այն ժամանակ նա գրում էր. «Մեծ ու փոքր տնտեսական համակարգերի փոխհարաբերությունների պարզունակ ըմբռնումը կարող է ստեղծել միայն այնպիսի քարացած մեխանիկական համակարգ, որտեղ կառավարման բոլոր պարամետրերն առաջադրված են նախօրոք, իսկ ամբողջ համակարգը լիմիտավորված է վերևից ներքև, յուրաքանչյուր տվյալ պահի համար և յուրաքանչյուր տվյալ կետում...

Վերևից ներքև լիմիտավորված այդպիսի տնտեսական համակարգը կարգելակի սոցիալական ու տեխնիկական առաջադիմությունը և տնտեսական կյանքի ռեալ պրոցեսի ճնշմամբ վաղ թե ուշ փուլ կգա» («Կոմունիստ», 1964, № 5, էջ 76—77):

Վերջին տասնամյակների ընթացքում քանիցս գործնական փորձեր էլ են արվել փոխելու կառավարման գոյություն ունեցող համակարգը: Դա արվել է թե՛ 50-ական թվականներին, թե՛ 60-ական թվականների երկրորդ կեսին, թե՛ 70-ական թվականների վերջին: Սակայն այդ փորձերը եղել են թերի և անհետևողական, դրանք լավագույն դեպքում տվել են կարճատև արդյունք և անհրաժեշտ բեկման չեն հանգեցրել: Մինչդեռ տնտեսական հին մեխանիզմի խթանիչ գործողությունը ավելի ու ավելի էր թուլանում, իսկ արգելակիչը՝ ուժեղանում էր:

Այժմ, բեկումնային փուլում, երբ մենք մոտեցել ենք արմատական լուծումների, առանձնապես կարևոր են գիտական հիմնավորվածությունը, տեսական ու գաղափարաքաղաքական պարզությունը սկսված փոփոխությունների էության և հիմնական իմաստի, կառավարման վերակառուցման ուղղության ըմբռնման գործում: Ինչպե՞ս և դեպի ու՞ր ընթանալ սրանից հետո: Ինչի՞ց մենք կարող ենք և պետք է հրաժարվենք, ի՞նչը պետք է ամրապնդել ու կատարելագործել և ինչը մտցնել նորից:

Այս կապակցությամբ կարևոր է ընդգծել. մեր պատմության յուրաքանչյուր փուլ լի է ժողովրդի լարված աշխատանքով, բերել է խոշոր մեծագործություններ:

Տնտեսական շինարարության կուտակված փորձը հսկայական արժեք է ներկայացնում: Այդ փորձը իր բոլոր նվաճումներով, խոտորումներով, երբեմն էլ սխալներով մի դպրոց է, որի դասերը մեզ համար կարևոր են թե՛ ներկայի և թե՛ ապագայի համար:

Սկզբունքային առումով կառավարման արմատական ռեֆորմի իմաստն ու ուղղությունը մեզ պարզ են: Դրանք արտահայտվում են հետևյալ բանաձևով՝ ավելի շատ սոցիալիզմ, ավելի շատ դեմոկրատիա:

Դա պարունակում է նաև հետևյալ հարցի պատասխանը. մեր վերակառուցումը չի՞ նշանակում, արդյոք, նահանջ սոցիալիզմի հիմունքներից կամ համենայն դեպս դրանց ինչ-որ թուլացում: Ոչ, չի նշանակում: Ընդհակառակն, այն, ինչ մենք արդեն անում ենք, նախատեսում և առաջարկում, պետք է ամրապնդի սոցիալիզմը, վերացնի այն ամենը, ինչ կանգնած է սոցիալիզմի զարգացման ճանապարհին և արգելակում է նրա առաջադիմությունը, բացահայտի նրա բոլոր պոտենցիալը ի շահ ժողովրդի, նրան գործողության մեջ դնի մեր հասարակարգի հսկայական առավելությունները, նրան տա ամենաարդիական ձևերը:

Բայց ի՞նչ է նշանակում սոցիալիզմի գործնական ամրապնդումը: Մեր հեղափոխական ուսմունքի ամբողջ էությունը, մեր ամբողջ հսկայական փորձը ցույց է տալիս, որ սոցիալիզմը անհնար է պատկերացնել ինչ-որ քարացած, անփոփոխ հասարակության ձևով, իսկ նրա կատարելագործման պրակտիկ աշխատանքը՝ որպես բարդ իրականությունը մեկընդմիշտ ձևակերպված գաղափարներին, հասկացություններին, բանաձևերին հարմարեցնելու, սազեցնելու եղանակ:

Սոցիալիզմի, նրա էկոնոմիկայի մասին պատկերացումները, հաշվի առնելով պատմական փորձը, պայմանները, մշտապես զարգանում ու հարստանում են: Մենք պետք է Վ. Ի. Լենինից սովորենք ստեղծագործական մոտեցում ցուցաբերել սոցիալիստական շինարարության տեսության ու պրակտիկայի զարգացման նկատմամբ, զինվենք գիտական մեթոդաբանությամբ, տիրապետենք կոնկրետ իրավիճակի կոնկրետ վերլուծության արվեստին:

Սոցիալիզմի տեսության և պրակտիկայի մեջ գլխավոր հարցն է՝ ինչպես սոցիա-

լիստական հիմքի վրա ստեղծել տնտեսական, գիտատեխնիկական ու սոցիալական առաջադիմության ավելի հզոր խթաններ, քան կապիտալիզմի օրոք, ինչպես պլանային ղեկավարումը առավել արդյունավետորեն միավորել անհատի ու կոլեկտիվի շահերի հետ: Սա ամենաբարդ հարցն է, որի պատասխանը որոնել և որոնում են սոցիալիստական միտքն ու հասարակական պրակտիկան: Սոցիալիզմի ներկա փուլում այդ հարցի նշանակությունը անհամեմատ անում է:

Այստեղ պետք է լուծվեն շատ պրոբլեմներ: Իսկ արտադրության արդյունավետության բարձրացման գործում խթանների ստեղծման բանալին մենք համարում ենք աշխատավոր մարդու համար թե՛ իր աշխատատեղում, թե՛ կոլեկտիվում, թե՛ առհասարակ հասարակության մեջ իսկական տիրոջ դիրքի ապահովումը:

Տեսականորեն և գործնականորեն անվիճելի է, որ աշխատավորների, որպես արտադրության տերերի, շահը ամենաուժեղ շահն է, սոցիալ-տնտեսական և գիտատեխնիկական առաջադիմության արագացման ամենահզոր շարժիչ ուժը:

Բայց իրականում ի՞նչ է նշանակում աշխատավորին դարձնել հանրային սեփականության ռեալ ու ակտիվ տեր: Դա նշանակում է կոլեկտիվին ու յուրաքանչյուր աշխատողի լայն հնարավորություն ընձեռել հանրային սեփականության տնօրինման գործում և բարձրացնել նրանց պատասխանատվությունը նրա օգտագործման արդյունավետության համար: Դա նշանակում է գործնականորեն ապահովել աշխատավորների ամենալայն զանգվածների մասնակցությունը էկոնոմիկայի կառավարմանը բոլոր մակարդակներում՝ բրիգադից մինչև ժողովրդական տնտեսություն: Դա նշանակում է, որ աշխատավորների եկամուտները պետք է կախման մեջ դրված լինեն այն բանից, թե ինչպես է մարդն աշխատում իր աշխատատեղում, իր ձեռնարկության շրջանակներում, ասենք նաև, ի վերջո, այն բանից, թե ինչպես են գործերը ամբողջ երկրում, առհասարակ՝ վերջնական արդյունքներից:

Էկոնոմիկայի դեմոկրատացումը անխզելիորեն կապված է պետական սեփականության հետ մեկտեղ կոոպերացիայի տարբեր ձևերի, անհատական աշխատանքային գործունեության ակտիվ օգտագործման հետ:

Այս առումով մեզ մոտ որոշումներ ընդունվել են: Բայց պետք է ասել, որ դրանց իրագործումը անմիանշանակ արձագանք է առաջ բերել: Ընդ որում, հաճախ խոսում են ոչ թե այն մասին, թե ինչ պետք է անել ընձեռված հնարավորությունները ավելի արագ ու ավելի լավ օգտագործելու համար, այլ այն մասին, թե տնտեսական գործունեության այդ ձևերը որքանով են օրինաչափ սոցիալիզմի ներկա փուլում:

Ոմանք կոոպերացիայի և անհատական աշխատանքային գործունեության մեջ տեսնել են համարյա մասնավոր տնտեսական պրակտիկայի վերածնունդ: Կարծում եմ, ընկերներ, թե մեր սեփական փորձը, թե մյուս սոցիալիստական երկրների փորձը խոսում են սոցիալիզմի շրջանակներում այդպիսի տնտեսական ձևերի հմուտ օգտագործման օգտակարության ու անհրաժեշտության մասին: Դրանք օգնում են մարդկանց կենսական պահանջմունքների ավելի լրիվ բավարարմանը, «ստվերային» էկոնոմիկայի, չարաշահումների ամեն տեսակ ձևերի դուրսմղմանը, այսինքն՝ սոցիալ-տնտեսական հարաբերությունների առողջացման իրական պրոցեսին:

Լուրջ վերաիմաստավորման է արժանի նաև ժողովրդական տնտեսության կենտրոնացված պլանային ղեկավարման ու նրա առանձին օղակների ինքնուրույնության, պլանաչափության և ապրանքադրամական հարաբերությունների հարաբերակցության պրոբլեմատիկան: Մենք ելնում ենք էկոնոմիկայի կառավարման ամբողջական համակարգում դրանց դիալեկտիկական միասնությունից ու փոխհամալրումից:

Տնտեսական նոր մեխանիզմում այս խնդիրը լուծվում է, մասնավորապես, տընտեսագիտական նորմատիվների միջոցով: Նորմատիվային մեթոդներին անցնելը թույլ է տալիս առավել լրիվ իրականացնել հասարակության, կոլեկտիվի և առանձին աշխատողի շահերի միասնության՝ սոցիալիզմին ներհատուկ օբյեկտիվ նախադրյալները:

Սոցիալիզմի գիտական ըմբռնմանը համապատասխան նրա տնտեսական համակարգի մեջ օրգանապես մտնում են ապրանքադրամային հարաբերությունները: Գների և ֆինանսավարկային լծակների միջոցով դրանց հմուտ օգտագործումը, շուկայի օրենքները հաշվի առնելով դրանց պլանաչափորեն տիրելն ու այն կառավարելը, ռուբլու վարկի ամրապնդումն ու բարձրացումը նպաստում են արդյունավետ հակածախսային մեխանիզմի ստեղծմանը, գործով սոցիալիզմի ամրապնդմանը:

Իհարկե, կառավարման համակարգում ժողովրդատնտեսական պլանավորման առավելությունների հետ միասնաբար ապրանքադրամային հարաբերությունների օգտագործումը ավելի դժվար խնդիր է, քան հրահանգներ ու դիրեկտիվներ տալը: Բայց մեր տնտեսական կադրերը պետք է այն լուծեն:

Սոցիալիզմի շարժիչ ուժերի ակտիվացման տեսակետից կենտրոնական տեղերից մեկը գրավում է տնտեսական մրցության, մրցութային սկզբունքների պրոբլեմը:

Մենք ելնում ենք ձեռնարկությունների և կազմակերպությունների, այդ թվում պետական և կոոպերատիվ ձեռնարկությունների ու կազմակերպությունների ռեալ մրցողականության ուժեղացման անհրաժեշտությունից՝ հանուն բնակչության և ժողովրդական տնտեսության պահանջների լավագույն բավարարման:

Այս մրցության հաղթողները պետք է շոշափելի տնտեսական օգուտ ստանան: Դա համապատասխանում է սոցիալիզմի սկզբունքներին, ասենք մարդկայնորեն էլ հասկանալի է։

Թերևս, հարկավոր է հատկապես ասել նաև գիտատեխնիկական ոլորտում մրցութային սկզբունքների լայն արմատավորման անհրաժեշտության մասին: Բանն այն է, որ անցյալում հաճախ այն կարծիքն էին հայտնում, թե գիտահետազոտական նախագծային և կոնստրուկտորական զուգահեռ կազմակերպությունների գոյությունը հանգեցնում է ուժերի փոշեցրման, կրկնորդման և ոչ ռացիոնալ ծախքերի: Բայց փորձը մեզ համոզեց, որ առանձին կազմակերպությունների մենաշնորհ վիճակը լըրջորեն արգելակում է գիտատեխնիկական առաջադիմությունը և հասարակության համար վերածվում շատ ավելի մեծ կորուստների:

Ես բնավ էլ չեմ ուզում ասել, թե մենք պետք է բոլոր ուղղություններում ստեղծենք զուգահեռ կառուցվածքներ, բայց գիտատեխնիկական մի շարք կարևոր պրոբլեմների լուծման համար զանազան գիտական կոլեկտիվների ստեղծումը, այդ թվում ոչ միայն մշտական, այլև ժամանակավոր հիման վրա, ճիշտ, արժեքավոր գործ է: Այն շահագրգռությամբ է ընկալվել ինժեներատեխնիկական, գիտական աշխատողների կողմից և արդեն որոշակի արդյունքներ է տալիս:

Մի խոսքով, ելնելով արդի փուլում սովետական հասարակության զարգացման պահանջներից, մենք պետք է նորացնենք պատկերացումները սոցիալիզմի տնտեսական ձևերի մասին, որպեսզի լայն ասպարեզ բացենք տնտեսական մեխանիզմի արմատական վերակառուցման համար:

Ընկերնե՛ր, ձեզ բաժանված է «Էկոնոմիկայի կառավարման արմատական վերակառուցման հիմնական դրույթների» նախագիծը, որը պատրաստել են քաղբյուրոն և կառավարությունը:

Այս փաստաթղթում առաջարկվող կառավարման վերակառուցման կոնցեպցիան նպատակ ունի տնտեսական աճը միջանկյալ արդյունքներից վերակողմնորոշել դեպի վերջնական, սոցիալապես նշանակալի արդյունքներ, դեպի հասարակական պահանջմունքների բավարարումը, մարդու համակողմանի զարգացումը, գիտատեխնիկական առաջադիմությունը վերածել տնտեսական աճի գլխավոր գործոնի, ստեղծել հուսալիորեն գործող հակածախսային մեխանիզմ:

Այս ամենին հասնելու համար հարկավոր է իրականացնել բոլոր մակարդակներում ղեկավարման առավելապես վարչական մեթոդներից անցումը առավելապես տնտեսագիտական մեթոդների, կառավարման լայն դեմոկրատացման, մարդկային գործոնի ըստ ամենայնի ակտիվացման: Այսպիսի անցումն իր մեջ ներառում է.

ԱՌԱՋԻՆ, միավորումների և ձեռնարկությունների ինքնուրույնության սահմանների կտրուկ ընդլայնում, դրանց փոխադրում լրիվ տնտեսական հաշվարկի և ինքնաֆինանսավորման, ամենաբարձր վերջնական արդյունքների համար պատասխանատվության բարձրացում, սպառողների հանդեպ առկա պարտավորությունների կատարում, կոլեկտիվի աշխատանքի արդյունավետությունից նրա եկամուտների մակարդակի ուղղակի կախման հաստատում, աշխատանքային հարաբերություններում կոլեկտիվ կապալի լայն զարգացում.

ԵՐԿՐՈՐԴ, էկոնոմիկայի կենտրոնացված ղեկավարման արմատական վերակառուցում, նրա որակական մակարդակի բարձրացում, ամբողջությամբ վերցրած ժողովրդական տնտեսության զարգացման ստրատեգիան, որակը, տեմպերն ու համամասնությունները, նրա հաշվեկշռվածությունը կանխորոշող գլխավոր պրոցեսների վրա կենտրոնացում և միաժամանակ ստորադաս տնտեսական օղակների օպերատիվ գործունեությանը միջամտելուց կենտրոնի վճռական ազատում.

ԵՐՐՈՐԴ, պլանավորման, գնագոյացման, ֆինանսավարկային մեխանիզմի արմատական ռեֆորմ, արտադրության միջոցներով անցում մեծածախ առևտրի և գի-

տատեխնիկական պրոցեսի, արտաքին տնտեսական կապերի, աշխատանքի և սոցիալական պրոցեսների կառավարման վերակառուցում:

**ՉՈՐՐՈՐԴ**, մասնագիտացման խորացումը և կոոպերացման կապերի նուսալիության բարձրացումն ապահովող կազմակերպական նոր կառուցվածքների ստեղծում, ինչպես նաև այդ հիմքի վրա գիտության և արտադրության միացում՝ առաջանցում դեպի որակի համաշխարհային մակարդակը.

**ՀԻՆԳԵՐՈՐԴ**, կառավարման չափից ավելի կենտրոնացված, հրահանգիչ համակարգից անցում դեպի դեմոկրատական համակարգը, ինքնակառավարման զարգացում, մարդկային անհատի պոտենցիալի ակտիվացման մեխանիզմի ստեղծում, կուսակցական, սովետական և տնտեսական մարմինների պարտականությունների հստակ սահմանազատում և գործունեության ոճի ու մեթոդների արմատական փոփոխում:

# ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ ԵԼԱԿԵՏԸ

Ընկերնե՛ր, տնտեսական մեխանիզմի արմատական վերափոխումները մենք սկսում ենք էկոնոմիկայի հիմնական օղակից՝ ձեռնարկությունից ու միավորումից, նկատի ունենալով առաջին հերթին, նրա համար ստեղծել առավել նպաստավոր տնտեսական միջավայր, ամրապնդել նրա իրավունքներն ու միաժամանակ բարձրացնել պատասխանատվությունը և այդ հիմքի վրա արմատական փոփոխություններ կատարել տնտեսական կառավարման բոլոր վերադաս օղակների գործունեության մեջ:

Սահմանելով վերակառուցման այսպիսի հաջորդականություն, մենք ղեկավարվել ենք այն բանով, որ հենց այստեղ են ծավալվում գլխավոր տնտեսական պրոցեսները, այստեղ են մարդկանց աշխատանքով ստեղծվում ժողովրդի համար անհրաժեշտ ամբողջ արտադրանքն ու սպասարկումները, այստեղ է նյութականանում գիտատեխնիկական միտքը: Հենց աշխատավորական կոլեկտիվում են ռեալ կերպով ձևավորվում տնտեսական ու սոցիալական հարաբերությունները, միահյուսվում մարդկանց անձնական, կոլեկտիվ և հասարակական շահերը: Ըստ էության, մեր հասարակության մեջ տիրող սոցիալ-քաղաքական կլիման մեծապես կանխորոշվում է աշխատավորական կոլեկտիվներում ստեղծվող իրադրությամբ:

Ո՞րն է ձեռնարկության տնտեսավարման ներկայումս գործող մեխանիզմի հիմնական թերությունը: Նախ և առաջ, ինքնազարգացման ներքին խթանների թուլությունը: Իրոք, ձեռնարկությունը դիրեկտիվ ցուցանիշների համակարգի միջոցով ստանում է առաջադրանք և ռեսուրսներ:

Փաստորեն ամեն տեսակ ծախքերը հատուցվում են: Արտադրանքի իրացումը ըստ էության, երաշխավորված է: Եվ ամենագլխավորը՝ աշխատողների եկամուտները թույլ են կապված կոլեկտիվի աշխատանքի վերջնական արդյունքների՝ պայմանագրերի կատարման, արտադրանքի որակի, շահույթի հետ: Ընդհանուր առմամբ իրավիճակն այսպիսին է. ներկայիս մեխանիզմի պայմաններում արտադրողի համար անշահավետ է կիրառել էժան հումք և ոչ թանկ արտադրանքներ, անշահավետ է բարձրացնել արտադրանքի որակը, անշահավետ է արմատավորել գիտատեխնիկական առաջադիմության նվաճումները:

Այսպիսի տնտեսական մեխանիզմի պայմաններում փաստորեն ջնջվում է լավ աշխատող և սիստեմատիկաբար հետ մնացող ձեռնարկությունների սահմանագիծը: ՍՄԿԿ Կենտկոմում վերջերս տեղի ունեցած խորհրդակցությունում «Օմսկշինա» միավորման գլխավոր դիրեկտոր Պյոտր Վասիլևիչ Բուդերկինը արդարացիորեն առաջադրում էր այս բոլոր հարցերը: Իրոք, Օմսկի միավորումը դասվում է ճյուղում լավագույնների թվին: Նրա կողմից թողարկվող ավտոմոբիլի դողերը աչքի են ընկնում բարձր որակով, դրանք ծառայում են մյուսներից մեկուկես անգամ երկար: Վերջին քսան տարում պայմանագրային մատակարարումների ձախողման ոչ մի դեպք չի եղել: Իսկ ի՞նչ է դա տալիս աշխատավորական կոլեկտիվին: Ըստ էության նա ոչ մի առավելություն չունի՝ ոչ աշխատավարձի աճի, ոչ էլ սոցիալական պահանջմունքների բավարարման հարցում:

Իսկ ո՞վ կբացատրի այս պարադոքսը. երկրում որակով լավագույնը հանդիսացող Օմսկի միավորման ավտոդողերի համար վճարում են նույն գինը, ինչ որ մյուս գործարաններին:

Կամ օրինակ վերցրեք ագրոարդյունաբերական համալիրի ոլորտից: Հյուսիսային Կովկասում թռչնաֆաբրիկաները միևնույն արտադրանքի արտադրության համար



գրեթե մեկ քառորդով պակաս գին են ստանում, քան երկրի մյուս գոտիներում: Իսկ չէ որ արդյունաբերական տեխնոլոգիայի հիման վրա թռչնաբուծական մթերքների ժամանակակից արտադրությունը, հատկապես բրոյլերայինը, կատարվում է միևնույն նախագծերով կառուցված շենքերում, երկրի մեն-միակ ձեռնարկությունում արտադրվող տեխնիկայի կիրառումով և կեր է ստանում մեկ համակարգից՝ հացամթերքների մինիստրությունից:

Այս ամենի հետևում ցցված են մեր տնտեսական մեխանիզմի «ականջները», որը, ուզում ենք թե ոչ, կողմնորոշված է դեպի միջակ և նույնիսկ վատ աշխատանքը: Իսկ ինչպե՞ս կարող է առաջ շարժվել էկոնոմիկան, եթե նա ջերմոցային պայմաններ է ստեղծում հետ մնացող ձեռնարկությունների համար և խփում է առաջավորներին:

Իհարկե, ընկերնե՛ր, գործն այսուհետև էլ այդպես առաջ տանել մենք չենք կարող: Տնտեսական նոր մեխանիզմը պետք է ամեն ինչ դնի իր տեղը: Այն կոչված է դառնալու հզոր լծակ, լավ, ձեռներեց, նախաձեռնողական աշխատանքի խթանիչ ուժ: Հենց այդպիսի նպատակ էլ մենք առաջադրում ենք: Անշուշտ, դրան հասնելու համար կպահանջվի որոշակի ժամանակ: Այժմ շատ կարևոր է ճիշտ մոտենալ տնտեսական նոր մեխանիզմին ներկայացվող հիմնական պահանջների ընտրությանը:

Գլխավորը, ինչին մենք պետք է հասնենք նոր մեխանիզմի արմատավորմամբ, ձեռնարկություններին լայն իրավունքներ տալն է և նրանց համար տնտեսական իսկական ինքնուրույնության ապահովումը լրիվ տնտհաշվարկի հիման վրա:

Գործով պետք է իրականացվի այն, ինչն արդեն անհրաժեշտ է համարված, այն է՝ ելնելով հասարակական ռեալ պահանջմունքներից, ինքը ձեռնարկությունն է կազմում արտադրանքի արտադրության և իրացման պլանը: Դրա հիմքը պետք է լինեն ոչ թե վերադաս մարմինների կողմից դիրեկտիվ կարգով սահմանված բազմաթիվ մանրամասն պլանային առաջադրանքները, այլ պետական կազմակերպությունների, տնտհաշվարկային ձեռնարկությունների, առևտրական կազմակերպությունների ուղղակի պատվերը համապատասխան քանակի ու որակի կոնկրետ արտադրանքի համար:

Ձեռնարկությունները պետք է դրվեն այնպիսի պայմանների մեջ, երբ նրանց միջև տնտեսական մրցություն է ծավալվում սպառողների պահանջարկի լավագույն բավարարման համար: Ընդսմին պետության շահերը երաշխավորվում են պետական պատվերների համակարգով: Բայց դրանք պետք է ունենան առաջնային, արտոնյալ տնտեսական պայմաններ, նախատեսեն կողմերի փոխադարձ պատասխանատվությունը և բաշխվեն, որպես կանոն, մրցութային հիման վրա:

Պլանավորման նկատմամբ մոտեցումների փոփոխման կապակցությամբ ծառանում է ստուգիչ թվերի բնույթի և նշանակության հարցը: Դրանք կոչված են ձեռնարկությունները կողմնորոշելու տնտեսական իրավիճակում: Դրա համար ստուգիչ թվերը պետք է արտացոլեն ձեռնարկության տվյալ արտադրանքի հանրային պահանջմունքը, արդյունավետության նվազագույն մակարդակը, սոցիալական բնույթի խնդիրներ, այսինքն՝ թե ինչպես ձեռնարկությունը հասցնել զարգացման անհրաժեշտ մակարդակի: Ստուգիչ թվերը չպետք է դիրեկտիվ բնույթ կրեն, աշխատավորական կոլեկտիվին կաշկանդեն պլանը մշակելիս, այլ նրան լայն ասպարեզ թողնեն տնտեսական պայմանագրեր կնքելիս լուծումների և պարտնյորների ընտրության համար: Պատվերների և պայմանագրերի կատարումը պետք է դառնա ձեռնարկության գործունեության գնահատման և կոլեկտիվի նյութական խթանման գլխավորագույն չափանիշը:

Սկզբունքորեն կարևոր պահանջ է ձեռնարկությունների և միավորումների փոխադրումը ինքնածախսածածկման և ինքնաֆինանսավորման: Դա նշանակում է, որ նրանց վաստակած միջոցների հաշվին պետք է ծածկվեն բոլոր ընթացիկ ծախքերը, ներառյալ աշխատանքի վարձատրությունը, ներդրումներ իրականացվեն արտադրության ընդլայնման ու վերակառուցման, աշխատավորական կոլեկտիվների սոցիալական զարգացման նպատակով: Բյուջետային ֆինանսավորումը պահպանվում է միայն առավել խոշոր և կարևոր պետական խնդիրների լուծման համար: Եվ միևնույն ժամանակ ձեռնարկություններին տրվում են բանկային վարկի պատասխանատու օգտագործման լայն հնարավորություններ: Այսպիսով, աշխատավորական կոլեկտիվը պետք է լրիվ տնտեսական պատասխանատվություն կրի իր գործունեության արդյունքների համար:

Տնտեսավարման նոր մեխանիզմում կարևորագույն դեր է հատկացվում երկարատև գործողության կայուն նորմատիվներին: Դրանք են պետական բյուջեում կատարվող վճարումները արտադրական ֆոնդերի, հողի, ջրի, մյուս բնական, ինչպես նաև

աշխատանքային ռեսուրսների համար, վարկի համար վճարվող տոկոսները: Դրանք են աշխատանքի վարձատրության և սոցիալ-մշակութային կարիքների բավարարման ֆոնդերի գոյացման նորմատիվները: Որպես յուրօրինակ տնտեսական նորմատիվներ հանդես են գալիս արտադրվող արտադրանքի գները և սպասարկումների սակագները: Նորմատիվների միջոցով տնտեսագիտական մեթոդներով ապահովվում է կոլեկտիվի շահերի և համաժողովրդական շահերի զուգակցումը:

Տնտեսական նոր մեխանիզմը նախատեսում է ձեռնարկությունների նյութատեխնիկական ապահովման համակարգի արմատական փոփոխում՝ անցում կենտրոնացված նյութատեխնիկական մատակարարումից դեպի արտադրության միջոցների մեծածախ առևտուրը: Ձեռնարկությունների համար պետք է ապահովվի վաստակած փողերով այն ամենը ձեռք բերելու հնարավորություն, ինչ պահանջվում է արտադրանքի թողարկման, շինարարության և վերակառուցման, սոցիալական հարցերի լուծման համար:

Աշխատավորների նախաձեռնության և ինքնագործունեության դրսևորման հզոր խթան է դառնում աշխատավորական կոլեկտիվների անցումը ինքնակառավարման, որի դեպքում նրանք ինքնուրույնաբար լուծում են արտադրության ներքին կազմակերպման բոլոր հարցերը, ընդհուպ մինչև ղեկավարների ընտրությունը:

Սրանք են, ինչպես երևում է, ձեռնարկությունների և միավորումների տնտեսավարման նոր մեխանիզմի հիմնական գծերը:

Իհարկե, այդ մեխանիզմին անցնելիս կարող են ծագել մի շարք անսովոր հարցեր: Դրանց մի մասը արդեն առաջադրվել է պետական ձեռնարկության մասին օրենքի նախագծի համաժողովրդական քննարկման ընթացքում:

Այդպիսի հարցերից մեկն այն է, թե ինչպես պետք է վարվել այն ձեռնարկությունների հետ, որոնք տնտեսության վատ վարման պատճառով անընդունակ են դառնում ապահովելու պետությանը տրվող վճարումները և աշխատավորական կոլեկտիվի եկամուտների բնականոն մակարդակը: Հավանաբար, այստեղ կարող են օգտագործվել օգնության տարբեր ձևեր. ճյուղի կամ բանկի կողմից: Բայց եթե ձեռնարկված բոլոր միջոցներից հետո էլ գործը չի շտկվում, ապա, ելնելով հասարակության շահերի առաջնությունից, կարող է հարց դրվել ձեռնարկության վերակազմակերպման կամ գործունեության դադարեցման մասին: Բնականաբար, դա ծայրահեղ միջոցառում է: Ինքնին հասկանալի է, որ պետությունը պետք է հոգատարություն դրսևորի աշխատավորներին աշխատանքով ապահովելու հարցում:

Առաջադրվում է նաև մեկ ուրիշ հարց. ձեռնարկությունների ինքնուրույնության ընդլայնումը, դիրեկտիվ ցուցանիշների ծավալուն համակարգից հրաժարվելը չե՞ն հանգեցնի արդյոք պլանային սկզբունքի թուլացման, ժողովրդական տնտեսության հաշվեկշռվածության վատթարացման:

Այսպիսի երկյուղները, ինչպես մենք ենթադրում ենք, անհիմն են: Կարծել, թե այդպիսի հսկայական էկոնոմիկայի շրջանակներում, ինչպիսին մերն է, կենտրոնից կարելի է ամեն ինչ նախատեսել՝ դա նշանակում է ընկնել պատրանքի մեջ:

Ժողովրդական տնտեսության հաշվեկշռման ուղղությամբ պետպլանի և մյուս տնտեսական գերատեսչությունների գործունեությունը կամրապնդվի ձեռնարկությունների տնտեսական շահերով և տնտեսական պատասխանատվությամբ, նրանց միջև կնքված տնտեսական պայմանագրերի դերի բարձրացմամբ: Այս պայմաններում հաշվեկշռվածության հասնելը կդառնա ավելի ռեալ գործ:

Տնտեսական նոր մեխանիզմի հիմնական գծերը արտացոլված են պետական ձեռնարկության (միավորման) մասին օրենքի նախագծում: Արտադրության աշխատողների, գիտնականների, կենտրոնական գերատեսչությունների ներկայացուցիչների, կուսակցական և սովետական աշխատողների, մեր հասարակայնության ընդհանուր կարծիքն այս է. ընդհանուր առմամբ դա լավ փաստաթուղթ է, որը համապատասխանում է այսօրվա պահանջներին և նոր խնդիրներին: Դա լավ հիմք է նոր մեխանիզմին անցնելու համար:

Նրա համաժողովրդական քննարկման ընթացքում հաստատակամորեն արտահայտվում էր հետևյալ պահանջը. չնահանջել իներցիոն սովորույթների և պատկերացումների ճնշման ներքո, հաստատակամորեն առաջ ընթանալ: Թույլ չտալ, որ նոր օրենքը, ինչպես դա հաճախ եղել է նախկինում, շրջապատվի բազմաթիվ հրահանգների ցանկապատով, որոնք կարող են ամլացնել նրա էությունը, արգելակել վերակառուցումը:

Սկզբունքորեն մեզ մոտ տնտեսավարման նոր մեթոդներին անցնելն արդեն



սկսվել է: Ես նկատի ունեմ, որ մի շարք ճյուղերի ձեռնարկություններն ու միավորումները այս տարվանից անցել են լրիվ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման պայմաններում աշխատելուն:

Հինգ-վեց ամիսը, իհարկե, խիստ փոքր ժամկետ է, որպեսզի լրիվ չափով ի հայտ գային տնտեսական նոր մեխանիզմի ինչպես ուժեղ կողմերը, այնպես էլ թերությունները: Մանավանդ որ գոյություն ունի նաև որոշակի յուրահատկություն, որի պայմաններում իրականացվում է այդ անցումը:

Այդ ձեռնարկությունների գործունեության վրա մեծապես ազդում են գերակշիռ գործոնները և նախ և առաջ նրանց ասես «կղզիացած վիճակը»: Դա վերաբերում է թե՛ հին սկզբունքներով աշխատող մատակարարողների ու սպառողների հետ ձեռնարկությունների կապերին և թե մինիստրությունների ու կենտրոնական տնտեսական մարմինների ղեկավարմանը, որոնք նույնպես առայժմ գործում են հին դրույթների հիման վրա: Ձեռնարկությունների փոխադրումը լրիվ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման սկզբունքների սկսվել է այն պայմաններում, երբ հնգամյա պլանն արդեն գործում է և շատ նորմատիվներ հարկ է լինում նրան հարմարեցնել: Եվ այդուհանդերձ, ընկերներ, դա մեզ չպետք է կանգնեցնի տնտեսավարման նոր սկզբունքների արմատավորման աշխատանքում:

## ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ԿԵՆՏՐՈՆԱՑՎԱԾ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ՖՈՒՆԿՑԻԱՆԵՐԻ ՎԵՐԱՓՈԽՈՒՄԸ

Ընկերնե՛ր, ժողովրդական տնտեսության հիմնական օղակների լրիվ տնտհաշվարկի և ինքնակառավարման պայմաններում որակապես նոր պետք է դառնա նաև էկոնոմիկայի կենտրոնացված ղեկավարումը:

Ըստ էության խոսքը ցենտրալիզմի նոր կենցեպցիայի մշակման մասին է, որը հենվում է աշխատավորների ակտիվության և ձեռնարկությունների ինքնուրույնության, այսինքն լենինյան ըմբռնումով իսկական դեմոկրատական ցենտրալիզմի վրա, որը անհամեմատ ավելի մեծ զորություն ունի, քան ամեն ինչ կարգավորելու փորձերի մեջ խրված ցենտրալիզմը:

Նախ և առաջ **ԺՈՂՈՎՐԴԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՊԼԱՆԱՎՈՐՄԱՆ ՄԱՍԻՆ:**

Նոր պայմաններում ինչպիսի՞ն է համապետական պլանի «փիլիսոփայությունը»: Այն պետք է սահմանի երկրի սոցիալ-տնտեսական զարգացման հիմնական գերակայություններն ու նպատակները, կառուցվածքային և ինվեստիցիոն քաղաքականության, գիտատեխնիկական առաջադիմության ուղղությունները, գիտական, կրթական և մշակութային պոտենցիալի կուտակման, պաշտպանունակության պահպանման խնդիրները:

Նոր պայմաններում նկատի է առնվում բարձրացնել պլանավորման այսպես ասած «տոն տվող» մասի, նախ և առաջ երկրի 15 տարվա հեռանկարային սոցիալ-տնտեսական զարգացման կոնցեպցիայի դերը: Այն պետք է ներառի բոլոր խոշոր ծրագրերը, հաշվեկշռի դրանք, սահմանի ստրատեգիական նպատակներին հասնելու ուղիները: Համապետական պլանավորման հիմնական ձևը պետք է իրականում դառնա հնգամյա պլանը՝ ըստ հնգամյակի տարիների նրա առաջադրանքների բաշխումով:

Պլանային համամասնությունների, էկոնոմիկայի հաշվեկշռվածության ապահովման համար նախատեսվում է մինիստրություններին ու գերատեսչություններին, ինչպես նաև միութենական հանրապետություններին նախնական տվյալներ տալ պլանավորման համար: Ինչ վերաբերում է ձեռնարկություններին, նրանց վրա ներգործելու գլխավոր լծակը կդառնան տնտեսական նորմատիվներն ու խթանները: Դրանք կոչված են միավորումների և ձեռնարկությունների գործունեությունը դնելու այնպիսի պայմանների մեջ, որ նրանց համար շահավետ լինի դեպի ստուգիչ թվերը կողմնորոշելով որոնել հանրային պահանջմունքների առավել արդյունավետ բավարարման ուղիներ:

Այստեղ հարկավոր է ասել մի հարցի մասին, որը հուզում է շատերին: Երկյուղներ են արտահայտվում, թե լրիվ տնտհաշվարկի պայմաններում միավորումների և ձեռնարկությունների համար ծավալային ցուցանիշների ուղղակի դիրեկտիվ սահմանումից հրաժարվելու դեպքում կարող է արտադրության աճի տեմպերի ժամանակավոր դանդաղում տեղի ունենալ առանձին ճյուղերում, ռեգիոններում և նույնիսկ ամբողջ երկրում:

Ինչ կարելի է ասել այս հարցի առթիվ, ընկերներ: Եթե խոսքը համախառն ծավալների շեշտման, կրկնահաշվի միջոցով, առանց վերջնական արդյունքների ռեալ ավելացման, աճի ավելի մեծ թվեր ստանալու մասին է, ապա հասարակությունը դրանից ոչ միայն որևէ բան չի շահում, այլև կորուստներ է կրում:

Իսկ մենք և դուք չէ որ հույս ունենք, որ տնտհաշվարկի, տնտեսավարման նոր մեթոդների անցնելը, կոլեկտիվ կապալի և աշխատանքի կազմակերպման ու խթանման մյուս առաջադիմական ձևերի լայն արմատավորումը թույլ կտան մեծացնել ժողովրդի աշխատանքային ակտիվությունը, ներգրավել մինչև օրս չօգտագործված ռեսուրսները, բարձրացնել արդյունավետությունը և դրանով իսկ իրական աճի ավելի արագ տեմպերի հասնել արտադրանքի բարձր որակի պայմաններում:

Հենց այդպիսի վերակառուցումն է բնական և, ավելին, միանգամայն անհրաժեշտ տնտեսական աճի նոր որակի ապահովման համար: Եթե նա արդյունավետորեն աշխատող ձեռնարկությունների ցուցանիշներով հարվածի էլ, ապա ընդհանուր առմամբ երկրի ժողովրդական տնտեսության համար, նրա զարգացման հեռանկարների համար, որոնք գնահատվում են ըստ վերջնական արդյունքների, ըստ հանրային պահանջմունքների բավարարման աստիճանի, այսպիսի վերակառուցումը, անկասկած, դրական դեր կխաղա:

Էկոնոմիկայի կառավարման վերակառուցման կարևորագույն բաղկացուցիչ մասն է ԳՆԱԳՈՅԱՑՄԱՆ ԱՐՄԱՏԱԿԱՆ ՌԵՖՈՐՄԸ: Առանց դրա լիակատար անցումը նոր մեխանիզմի անհնար է:

Գինը պետք է կարևոր խթանիչ դեր խաղա ռեսուրսների օգտագործման բարելավման, ծախքերի նվազեցման, արտադրանքի որակի բարձրացման, գիտատեխնիկական առաջադիմության արագացման գործում, բաշխման և սպառման ամբողջ համակարգի ռացիոնալացման գործում: Այստեղ պետք է հանդես բերվեն նոր, զարգացման արդի փուլին համապատասխանող քաղաքական-տնտեսական մոտեցումներ:

Գների ձևավորված համակարգը երկար ժամանակ կողմնորոշվում էր դեպի բնական ռեսուրսների էժանությունը: Ածխի, նավթի, գազի և էլեկտրաէներգիայի այսօր գործող գները պայմաններ չեն ապահովում վառելիքաէներգետիկ համալիրի ինքնաֆինանսավորման համար: Դրանք շարունակում են ստեղծել բնական ռեսուրսների էժանության և անսպառության պատրանք, կողմնորոշել դեպի դրանց արտադրության, սպառման և արտահանման հետագա մեծացում:

Գնագոյացման նկատմամբ տնտեսապես չարդարացված մոտեցումները հանգեցրին արտադրանքների և սպասարկումների ամենատարբեր տեսակների արտադրության ու իրացման լրավճարների ծագմանը և արագ աճին: Այսօր պետբյուջեից տրվող լրավճարների ընդհանուր ծավալը անցնում է տարեկան 73 միլիարդ ռուբլուց: Մյուս կողմից, շատ արտադրատեսակների գծով ստեղծվել է շահութաբերության չհիմնավորված բարձր մակարդակ, որը բնավ էլ չի արտացոլում արտադրության արդյունավետությունը: Եվ դա նույնպես գնագոյացման շեղումների հետևանք է:

Նա, ում արտադրանքի գները անհիմն կերպով նվազեցված են, դրա արտադրությունն ավելացնելու խթաններ չունի, իսկ նա, ով արհեստականորեն բարձրացված գների պատճառով հավելյալ շահույթ է ստանում, զրկված է ծախքերը նվազեցնելու, արդյունավետությունը բարձրացնելու խթաններից: Այսպիսի իրավիճակում ժողովրդական տնտեսության մեջ բնականոն տնտեսական հարաբերությունները պարզապես անհնար են:

Ահա թե ինչու մենք կանգնած ենք ոչ թե գների համակարգի ինչ-որ մասնակի կատարելագործում անցկացնելու, այլ գնագոյացման արմատական ռեֆորմ, մեր ամբողջ «գնային տնտեսության»՝ մեծածախ, գնման, մանրածախ գների և սակագների փոխկապակցված վերակառուցում իրականացնելու անհրաժեշտության առջև:

Խոսքը ոչ միայն գների մակարդակի մասին է, այլև դրանց սահմանման կարգի մասին: Կարևորագույն արտադրանքի գները, իհարկե, հարկավոր է սահմանել կենտրոնացված ձևով, համապետական պլանի մշակման հետ մեկտեղ, որպես դրա մի մասը: Բայց դրա հետ մեկտեղ նոր մեխանիզմում նպատակահարմար է ընդլայնել պայմանագրային գների կիրառման ոլորտը, ինչը կնպաստի ձեռնարկությունների իրավունքների և տնտեսական ինքնուրույնության ընդլայնմանը:

Մեծածախ գների ռեֆորմը պետք է առողջացնի ժողովրդական տնտեսության իրադրությունը, լավագույն պայմաններ ստեղծի հանուն արտադրության արդյունավետության, ռեսուրսախնայողության, արտադրանքի որակի մղվող պայքարի համար: Ինչ վերաբերում է մանրածախ գներին, դրանց փոփոխումը ոչ միայն չպետք է հան-



գեցնի աշխատավորության կենսամակարդակի վատացման, այլև, ընդհակառակն, աշխատավորների որոշակի կատեգորիաների համար այդ մակարդակի բարձրացման, սոցիալական արդարության առավել լրիվ իրականացման:

Պետք է պարզ լինի մի բան. գնագոյացման ռեֆորմի կարևորության և բարդության պատճառով դրա նախապատրաստմանը պետք է վերաբերվել մեծ պատասխանատվությամբ: Կարճ ժամկետներում պետք է կատարվի հսկայական ծավալի աշխատանք և այդ գործում հարկավոր է ներգրավել անհրաժեշտ ուժեր: Մենք պետք է նկատի ունենանք, որ առանց այդ հարցի լուծման անհնար է նորովի կազմել հնգամյակը, անցնել էկոնոմիկայի կառավարման ամբողջական համակարգի:

Գնագոյացման ռեֆորմի քաղաքական և սոցիալական կարևորությունը նկատի ունենալով, այն պետք է երկրում դառնա ամենալայն քննարկման առարկա:

Գնագոյացման ռեֆորմի հետ սերտորեն կապված է ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՆՅՈՒԹԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՊԱՀՈՎՄԱՆ ՀԱՄԱԿԱՐԳԻ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՈՒՄԸ: Դրա հիմնական ուղղությունը վճռական անցումն է արտադրության միջոցների մեծածախ առևտրի՝ ինչպես մատակարարողների ու սպառողների ուղղակի կապերի միջոցով, այնպես էլ տնտհաշվարկային մեծածախ բազաների միջոցով: Այդ դեպքում վերջին հաշվով կպահպանվեն մեծածախ առևտրի կարգավորման ու դրա վերահսկողության պետական մարմինների ֆունկցիաները:

Արտադրության միջոցների մեծածախ առևտրին անցնելու հարցը նոր չէ, բայց միայն վերջին ժամանակներս է այստեղ հաջողվել առաջին ռեալ քայլերն անել: Մենք պետք է արագացնենք այդ աշխատանքը, ընդլայնենք դրա մասշտաբները, որպեսզի այն ավարտենք մոտակա տարիներին:

Ծանրակշիռ շատ պատճառներ հրամայաբար թելադրում են արտադրության միջոցների մեծածախ առևտրի անհրաժեշտությունը և ամենից առաջ ձեռնարկությունների ու միավորումների փոխադրումը տնտհաշվարկի: Կուզենայի խոսել ևս մի պատճառի՝ ապրանքանյութական արժեքների՝ պաշարները նորմալացնելու անհրաժեշտության մասին: Արտադրական ոլորտի հիմնական ճյուղերում այդ պաշարները անցել են 300 միլիարդ ռուբլուց: Դրանցում մեռցվում են ազգային հարստության զգալի ծավալներ:

Նման իրավիճակը մեծապես բացատրվում է նյութատեխնիկական մատակարարման ծանրաշարժությամբ և ոչ օպերատիվությամբ, դրա անհուսալիությամբ, ինչը ձեռնարկություններում ռեսուրսների պաշար կուտակելու ձգտում է ծնում:

Տեսեք, թե ինչ է տեղի ունենում մետաղի հետ: Չեն դադարում գանգատները, թե այն պակաս է: Իսկ դրա հետ մեկտեղ մետաղի պաշարներն ավելանում են: Վերջին վեց տարում սպառողների մոտ սև մետաղների գլանվածքի պաշարներն ավելացել են 2 միլիոն տոննայով և այս տարվա սկզբին կազմել էին 9,3 միլիոն տոննա: Ահա և եկեք դատենք. մեզ մետա՞ղ է պակասում, թե մենք չենք կարողանում տնտեսատիրոջ պես տնօրինել այն: Ճիշտ է, գլանվածքի այդօրինակ պաշարները հեշտ չի մոբիլիզացնել. չէ՞ որ դրանք գտնվում են ձեռնարկություններում: Ձեզ կարող է զարմացնել, բայց ես պետք է ասեմ, որ պետմատի կազմակերպություններին բաժին է ընկնում ապրանքանյութական պաշարների ընդամենը մեկուկես տոկոսը, մնացածը փոշեցրված է տնտեսության մեջ:

ՍՄԿԿ Կենտկոմում կայացած խորհրդակցությունում նաև այսպիսի հարց ծագեց. արդյոք կարելի՞ է մեծածախ առևտրի ձեռնամուխ լինել ռեսուրսների պակասության դեպքում: Այս փաստարկը միշտ էլ առաջ է քաշվում, երբ քննարկվում է մեծածախ առևտրի անցնելու ժամկետների խնդիրները: Խորհրդակցության մասնակիցները համոզիչ կերպով ասացին, որ ֆոնդավորման, մատակարարման բուն համակարգն էլ հենց դեֆիցիտ է հարուցում: Եվ դա հաստատվեց կոնկրետ օրինակներով: Այստեղ վճռական նշանակություն կունենա ձեռնարկությունների անցումը լրիվ տնտհաշվարկի սկզբունքին: Ուստի, ինչքան արագ անցնենք անմիջական կապերին, մեծածախ առևտրին, այնքան արագ կազատվենք նյութական արժեքների թե՛ դեֆիցիտից, թե՛ դրանց ավելցուկային պաշարներից:

Եվ սրանք կաբինետային դատողություններ չեն: Ահա մի կոնկրետ փաստ: Ներկայումս, անգամ տնտհաշվարկի նոր սկզբունքներին կոլտնտեսությունների ու սովխոզների անցնելու հենց սկզբին, նկատելիորեն կրճատվում են գյուղատնտեսական տեխնիկայի և մյուս ռեսուրսների նրանց պատվերները: Օրինակ, կոմբայնների եկող տարվա պատվերները կրճատվում են մոտավորապես 30 տոկոսով: Նվազում են գյուղատնտեսական տրակտորների և գյուղատնտեսական այլ տեխնիկայի առանձին

լուծել մեր տնտեսական զարգացման միաժամանակ մի շարք խոշոր ու բարդ խնդիրներ, իրականացնել ժողովրդական տնտեսության ստրուկտուրային վերակառուցում, միջոցներ ձեռնարկել արագացնելու գիտատեխնիկական առաջադիմությունը, կատարել կառավարման արմատական ռեֆորմ, խորացնել նրա դեմոկրատական հիմունքները:

Ընդսմին չի կարելի աչքաթող անել, որ այս խնդիրների կոմպլեքսային լուծման համար անհրաժեշտ ինչ-որ ժամանակաշրջանում միաժամանակ կգործեն կառավարման ինչպես նոր, այնպես էլ հին մեթոդները:

Եվ աա կուսակցական կազմակերպությունների առջև դնում է իրենց բնույթով ու բարդությամբ անսովոր պրոբլեմներ: Նրանք կոչված են գտնվելու իրագործվող բոլոր վերափոխումների ավանգարդում:

Սկսված ռեֆորմը շոշափում է մեր տնտեսական շենքի ըստ էության բոլոր հարկերը: Եվ խիստ անհրաժեշտ է, որ տնտեսական մեխանիզմի վերափոխման՝ ժողովրդական տնտեսության բոլոր մակարդակներում անցկացվող հսկայական, բազմակողմանի աշխատանքը գտնվի կուսակցական կազմակերպությունների ու կոմիտեների մշտական և անդուլ ուշադրության ոլորտում: Հենց նրանք պետք է քաղաքական, համապետական մոտեցում ապահովեն էկոնոմիկայի կառավարումը արմատապես վերակառուցելու աշխատանքի նկատմամբ:

Հատկապես մեծ են ձեռնարկությունների ու միավորումների կուսակցական կազմակերպությունների դերն ու պատասխանատվությունը: Նրանք քաղաքական հասունության և մարտունակության քննություն են հանձնում: Նրանց կուսակցական դիրքորոշումից և պրակտիկ աշխատանքից մեծապես կախված կլինեն անցումը տնտեսավարման նոր մեթոդների, աշխատավորական կոլեկտիվներում ինքնակառավարման սկզբունքների իրականացումը:

Մենք վստահ ենք, որ բոլոր կուսակցական կազմակերպությունները, բոլոր կոմունիստները, բոլոր կադրերը կրկնապատկված եռանդով ձեռնամուխ կլինեն հասունացած տնտեսական պրոբլեմների լուծմանը, լիովին գիտակցելով, որ մեր էկոնոմիկայի վերակառուցումը սովետական ժողովրդի բարեկեցության աճի ուղիով մեր առաջընթացի, մեր սոցիալիստական հայրենիքի համակողմանի առաջադիմության գլխավոր պայմանն է:

* * *

Ընկերներ, այսպիսիք են այն գաղափարներն ու սկզբունքները, որոնց հիման վրա նախատեսվում է մեր էկոնոմիկայի կառավարման վերակառուցումը, որն ամենախորն ու ամենամասշտաբայինն է սոցիալիստական շինարարության տարիներին: Մենք պարտավոր ենք դրա իրագործմանը մոտենալ ժողովրդի հանդեպ, մեր երկրի ապագայի հանդեպ հսկայական քաղաքական պատասխանատվության զգացումով:

Ռեֆորմի գլխավոր խնդիրն է նոր խթաններ ու ազդակներ հաղորդել մեր տնտեսական աճին, նյութական հզոր հիմք ստեղծել սովետական հասարակության սոցիալական ու հոգևոր արագ առաջադիմության համար:

Երկրում ծավալված վերակառուցումը Հոկտեմբերի գործի ուղղակի շարունակումն է, մեր հեղափոխության դրոշին գրված իդեալների հետևողական իրագործումը, հեղափոխություն, որի 70-ամյակը մենք նշելու ենք այս տարի:

Վերակառուցումը ժամանակի պատմական մարտահրավերի պատասխանն է: Մեր կուսակցությունը, մեր ժողովուրդը կկարողանան դրան պատասխանել այնպես, ինչպես պատասխանել են՝ կատարելով մեծագույն սոցիալական հեղափոխությունը, կառուցելով սոցիալիզմ, համաշխարհային պատմական հաղթանակ տանելով Հայրենական մեծ պատերազմում:

Այդպես է եղել միշտ, երբ մեր առջև ծառացել են պատմական ընտրության խնդիրներ: Այդպես կլինի նաև հիմա:

(ԶԵԿՈՒՅՑՈՒՄԸ ԼՍՎԵՑ ՄԵԾ ՈՒՇԱԴՐՈՒԹՅԱՄԲ ԵՎ ՈՒՂԵԿՑՎՈՒՄ ԷՐ ԵՐԿԱՐԱՏԵՎ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՎ):

---

# ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎԻ եզրափակման խոսքը ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում 1987 թվականի հունիսի 26-ին

Ընկերներ, մենք ավարտում ենք Կենտրոնական կոմիտեի մեր պլենումի աշխատանքը: Դուք գիտեք, և դա իրավացիորեն նշվում էր ելույթներում, որ այս պլենումին սպասում էին ամբողջ կուսակցությունը, ամբողջ երկիրը: Նախ՝ վերակառուցման ներկա փուլը առաջադրել է շատ պրոբլեմներ: Դրանց գնահատականը, քաղաքական և կազմակերպչական աշխատանքի համար հետևությունները պետք է տար Կենտկոմի սույն պլենումը: Եվ, երկրորդ՝ պլենումի առջև կանգնած էր մեր էկոնոմիկայի կառավարման արմատական ռեֆորմի հիմնական դրույթները, սկզբունքները մշակելու խնդիրը:

Կարծում եմ՝ մենք լիակատար հիմք ունենք ասելու, որ պլենումն արդարացրեց կոմունիստների, բոլոր սովետական մարդկանց հույսերը: Սրանով է որոշվում նրա հսկայական նշանակությունը: Պլենումը մեր վերակառուցումը էապես առաջ է մղում ՍՄԿԿ XXVII համագումարի կանխանշած կուրսով, խորացնում է վերակառուցման անհրաժեշտության և նրա իրագործման նկատմամբ ցուցաբերվող մոտեցման նոր մեթոդների ըմբռնումը:

Պլենումում ընդունվեց էկոնոմիկայի կառավարման արմատական ռեֆորմի ծրագիր, որը ստեղծում է վերակառուցումն արագացնելու հզոր և ներգործուն լծակ:

Այդ ծրագիրը ներառել է այն ամենը, ինչ պրակտիկ փորձը մեզ տվել է անցած երկու տարում, ինչ մեզ տվել է գիտական միտքը, ինչ տվել են սոցիալիզմի կառուցման տասնամյակների դասերը: Ծրագրի համար բազա են ծառայել այն տնտեսափորձերը, որ վերջին տարիներին մենք կատարում էինք, ստուգելով էկոնոմիկայի նկատմամբ նոր մոտեցումները: Այնպես որ, ընդունված փաստաթղթերում արտացոլված են կոլեկտիվ միտքը, այն ամենը, ինչ մենք կարողացանք այդ հարցի առթիվ ընդհանրացնել մեր հասարակության զարգացման ժամանակակից փուլում:

Հատկապես հարկ է նշել այն մթնոլորտը, որի մեջ տեղի ունեցավ պլենումը: Դա արտացոլում է այն նոր իրադրության հետագա զարգացումը, որ կուսակցության մեջ ստեղծվում է ապրիլյան պլենումից և ՍՄԿԿ XXVII համագումարից հետո, բնութագրվում է վերակառուցման ընթացքի, նրա հաջողությունների ու նվաճումների սթափ գնահատումով, աշխատանքի խոր վերլուծությամբ, թերությունների քննադատությամբ և հասունացած պրոբլեմների ազատ, գործարար քննարկումով: Այս ամենը հատուկ էր սույն պլենումի աշխատանքին, և մենք բոլորս՝ Կենտկոմի անդամներս, կարող ենք միանգամայն օրինական գոհունակություն զգալ:

Զեկուցման մեջ և ելույթներում ընդգծվում էր այն միտքը, որ վերակառուցման պրոցեսը, իր բոլոր նվաճումներով հանդերձ, առայժմ դանդաղ է ընթանում: Քննադատաբար գնահատելով իրավիճակը, մենք դրանով իսկ մոբիլիզացնում ենք մեր հնարավորությունները, իսկ դրանք հասարակական կյանքի բոլոր ոլորտներում մեծ չեն:

Այստեղ հնչած քննադատությունն ու ինքնաքննադատությունը գործերի վիճակից բանական անբավարարվածության արտահայտությունն են և մեր ուժի ցուցանիշը: Բոլշևիկյան քննադատության գլխավոր հատկանիշը նրա կոնկրետությունն է, գործարարությունը և կոնստրուկտիվությունը: Մենք լիակատար հիմունքով կարող ենք ասել, որ մեզանում առաջընթաց կա թե՛ արդյունաբերության մեջ և թե՛ էկոնոմիկայի մի այնպիսի բարդ հատվածում, ինչպիսին է գյուղատնտեսությունը:

տանքը, ժողովրդական տնտեսության մեջ վերակառուցումը կարող են հաջող լինել լոկ այն դեպքում, եթե դրանք ներգրավեն աշխատավորների միլիոնավոր զանգվածներին: Ուստի կարելի է ասել, որ կառավարման արմատական վերակառուցման գիծը մեզանում ըստ էության շաղկապվում է հետագա դեմոկրատացման գծի հետ, և ոչ միայն արտադրական, այլև ամբողջ հասարակական կյանքի: Էկոնոմիկայի առաջադիմությունը և սոցիալիստական դեմոկրատիայի զարգացումը անբաժանելի են:

Շուտով դուք կմեկնեք տեղերը՝ հանրապետություններ, երկրամասեր, մարզեր, քաղաքներ ու շրջաններ, ձեռնարկություններ, և Կենտկոմի անդամների, պլենումի բոլոր մասնակիցների առջև պրակտիկ առումով կծառանան հսկայական կարևորություն ունեցող խնդիրներ, որոնք բխում են ընդունված որոշումներից:

Պլենումի հիմնադրույթները, գաղափարները պետք է նախ և առաջ հասցվեն կոմունիստների, ժողովրդի ամենալայն խավերի գիտակցությանը: Շատ կարևոր է, որ պլենումի սահմանած երկարաժամկետ խնդիրները մենք հմտորեն շաղկապենք ընթացիկ խնդիրների լուծման հետ: Եվ ամենից առաջ այն խնդիրների, որոնք առաջադրված էին Կենտկոմի սույն պլենումում քաղբյուրոյի զեկուցման մեջ:

Կարծում եմ՝ այժմ սա գլխավորն է: Մարդիկ պետք է ռեալ կերպով զգան, որ վերակառուցումը ծավալվում է, խորանում և սկսում է ռեալ պտուղներ տալ կյանքի բոլոր ոլորտներում և ամենից առաջ այն բանում, ինչը վերաբերում է աշխատավորների ամենօրյա, կենսական կարիքներին:

Թույլ տվեք, ընկերներ, ձեզ մաղթել Կենտկոմի պլենումի ընդունած որոշումների կատարման արգասաբեր աշխատանք:

---

## ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՈՐՈՇՈՒՄԸ

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ԱՐՄԱՏԱԿԱՆ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ ՈՒՂՂՈՒԹՅԱՄԲ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԽՆԴԻՐՆԵՐԻ ՄԱՍԻՆ

1. Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումը, լսելով և քննարկելով ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Մ. Ս. Գորբաչովի զեկուցումը «Կուսակցության խնդիրները էկոնոմիկայի կառավարման արմատական վերակառուցման ուղղությամբ» հարցի մասին, նշում է, որ սոցիալ-տնտեսական զարգացման արագացման, վերակառուցման՝ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումի, ՍՄԿԿ XXVII համագումարի կուրսի հետևողական իրագործումը խոր ազդեցություն է գործում սովետական հասարակության կյանքի բոլոր ոլորտների վրա: Սովետական հասարակության դեմոկրատացման ճանապարհին խոշոր ուղենիշ եղավ ՍՄԿԿ Կենտկոմի հունվարյան պլենումը: Սովետական ժողովուրդը լիովին պաշտպանեց և ավելի ու ավելի ակտիվորեն է մասնակցում լայնընդգրկուն վերափոխումների պրոցեսին:

Պլենումը հավանություն է տալիս վերակառուցման կուրսի իրագործման ուղղությամբ ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի քաղաքական ու պրակտիկ գործունեությանը և հանձնարարում է անշեղորեն շարունակել կուսակցական համագումարի ստրատեգիական գիծը՝ ի շահ ժողովրդի, հանուն սոցիալիզմի գործի ամրապնդման, սոցիալիստական դեմոկրատիայի խորացման:

2. Պլենումն արձանագրում է, որ այժմ, երբ կուսակցությունն ու երկիրը թևակոխել են վերակառուցման առավել պատասխանատու ժամանակաշրջան՝ պրակտիկ գործերի ժամանակաշրջան, գլխավորն այն է, որ ըստ ամենայնի արագացվեն վերափոխումների տեմպերը, ծանրության կենտրոնը տեղափոխվի ներքին ու արտաքին քաղաքականության բոլոր ուղղություններում կազմակերպչական և գաղափարաքաղաքական քրտնաջան ու նպատակամետ աշխատանքի ծավալման վրա:

Պլենումը առանձնապես կարևոր նշանակություն է տալիս այն բանին, որ կուսակցության, յուրաքանչյուր կուսակցական կազմակերպության, յուրաքանչյուր կոմունիստի ամբողջ աշխատանքը ենթարկված լինի վերակառուցման խորացմանը, վերակառուցման դրական արդյունքների ամրապնդմանը, այն ամենի առաջմղմանն ու զարգացմանը, ինչը հնարավորություն է ընձեռում ավելի արագ ազատվել լճացման երևույթներից, պրակտիկա մտցնել արագացման հուսալի և գործուն մեխանիզմ:

Պլենումը անհրաժեշտ է համարում էլ ավելի ակտիվորեն և հետևողականորեն վարել սովետական հասարակության դեմոկրատացման գիծը, դա դիտելով որպես աշխատավորության լայն զանգվածներին վերակառուցման անմիջականորեն մասնակիցներ դարձնելու գլխավոր պայման, նորացման պրոցեսի անշրջելիության երաշխիք:

3. ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումը գտնում է, որ վերակառուցման հանգուցային խնդիրը, սոցիալ-տնտեսական զարգացման արագացման կարևորագույն պայմանը էկոնոմիկայի կառավարման արմատական ռեֆորմն է: Այստեղ առաջին պլան է մղվում նրա ամբողջական համակարգի ստեղծումը, որը կոչված լինի հեղափոխականացնող ազդեցություն գործելու սովետական մարդկանց կյանքի ու աշխատանքի բոլոր կողմերի վրա, նոր որակ հաղորդելու սոցիալիզմին, այն հասցնելու զարգացման նոր աստիճանի:

Պլենումը հավանություն է տալիս էկոնոմիկայի կառավարումը արմատապես

վերակառուցելու՝ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Մ. Ս. Գորբաչովի զեկուցման մեջ ձևակերպված հիմնական ուղղություններին, վերակառուցման անցկացման նպատակներին և սկզբունքներին: Կառավարման ամբողջական համակարգի անցումը պետք է ապահովի էկոնոմիկայի զարգացման ռեալ արագացում, նոր դինամիզմ ու որակ, հասարակության պահանջմունքների բավարարում գիտատեխնիկական առաջադիմության նվաճումների առավելագույն օգտագործման միջոցով, բանական սոցիալիստական բնօգտագործման ապահովում, բոլոր մակարդակներում վճռական անցում ղեկավարման գերազանցապես վարչական մեթոդներից գերազանցապես տնտեսագիտական մեթոդների, մարդկային գործոնի ըստ ամենայնի ակտիվացում:

Հաստատել ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի ներկայացրած «Էկոնոմիկայի կառավարման արմատական վերակառուցման հիմնական դրույթները»:

Հավանություն տալ պետական ձեռնարկության (միավորման) մասին ՍՍՀՄ օրենքի՝ համաժողովրդական քննարկման արդյունքների հիման վրա լրամշակված նախագծին: ՍՍՀՄ Մինիստրների խորհրդին հանձնարարել նախագիծը ներկայացնելու ՍՍՀՄ Գերագույն սովետի քննարկմանը:

4. ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը նշում է, որ կառավարման արմատական վերակառուցումը նորովի է առաջադրում սոցիալիստական էկոնոմիկայի ղեկավարման մեջ դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքի կիրառման հարցը, նոր պահանջներ է ներկայացնում էկոնոմիկայի կառավարման կենտրոնական մարմինների գործունեությանը: Նրանք կոչված են ապահովել սոցիալ-տնտեսական և գիտատեխնիկական զարգացման համապետական ստրատեգիայի իրագործումը, էկոնոմիկայի լիակատար և հուսալի հաշվեկշռվածությունը, ձեռնարկությունների և միավորումների տնտհաշվարկային ինքնուրույնության և աշխատավորական կոլեկտիվների ինքնակառավարման պայմաններում նրանց արդյունավետ տնտեսավարման և այդ հիման վրա հասարակական պահանջմունքների բավարարման համար անհրաժեշտ նախադրյալների ստեղծումը:

Պլենումը հիմնականում հավանություն է տալիս այն որոշումների նախագծերին, որոնք վերաբերում են կառավարման կենտրոնական, հանրապետական ու տեղական մարմինների գործունեության վերակառուցմանը, պլանավորման համակարգին, ֆինանսավարկային արմատական ռեֆորմի, գնագոյացման ռեֆորմի իրագործմանը և նյութատեխնիկական մատակարարման վերակառուցմանն ու մյուս նորմատիվ ակտերին և ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյին ու ՍՍՀՄ Մինիստրների խորհրդին հանձնարարում է դրանք ընդունել՝ հաշվի առնելով Կենտկոմի պլենումում տեղի ունեցած քննարկումը:

5. ՍՄԿԿ Կենտկոմի պլենումն ընդգծում է, որ այժմ առանձնապես կարևոր և անհրաժեշտ է ուժեղացնել կուսակցական ազդեցությունը վերակառուցման բոլոր ուղղություններում, ապահովել հասարակական պրոցեսների հմուտ ղեկավարումը, կուսակցական աշխատանքում նոր, ստեղծագործական մոտեցումների մշակումը: Էկոնոմիկան կառավարման նոր համակարգի փոխադրելու աշխատանքում պետք է հատուկ ուշադրություն նվիրել ժողովրդական տնտեսության նորմալ գործունեության ապահովմանը անցման ժամանակաշրջանում, երբ գործելու են կառավարման ինչպես նոր, այնպես էլ հին մեթոդները:

Կուսակցական կազմակերպությունները կոչված են լինելու իրագործվող վերափոխումների ավանգարդում: Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմները, կուսակցության երկրկոմները, մարզկոմները, քաղկոմներն ու շրջկոմները պետք է հետևողականորեն վարեն աշխատանքի ոճի կատարելագործման, ղեկավարման քաղաքական մեթոդների հաստատման գիծը՝ հենվելով սկզբնական կուսկազմակերպությունների, աշխատավորական կոլեկտիվների և հասարակական կազմակերպությունների վրա, ճշմարտացիորեն և սկզբունքորեն գնահատելու գործերի վիճակը, կադրերին սովորեցնելու գործել նորովի: Անհրաժեշտ է կոնկրետ միջոցներ ձեռնարկել բարձրացնելու պատասխանատվությունն ու սկզբունքայնությունը կենտրոնական տնտեսագիտական մարմինների, մինիստրությունների ու գերատեսչությունների, ձեռնարկությունների ու միավորումների կուսակցական կազմակերպությունների աշխատանքում:

Կուսակցության XXVII համագումարի, Կենտկոմի 1987 թվականի հունվարյան պլենումի և սույն պլենումի որոշումների իրականացման ուղղությամբ կուսակցական կազմակերպությունների գործունեությունն ակտիվացնելու նպատակով անհրաժեշտ



համարել ընթացիկ տարվա վերջին անցկացնել կոմունիստների ժողովներ և կուսակցական կոմիտեների պլենումներ, օրակարգում դնելով ընտրովի մարմինների հաշվետվությունները վերակառուցման ղեկավարման իրենց աշխատանքի մասին:

* * *

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումն ընդգծում է, որ տնտեսագիտական կառավարման, ամբողջությամբ վերցրած տնտեսական մեխանիզմի վերակառուցումը այժմ այն կենտրոնական խնդիրն է, որը կանխորոշում է արագացման ամբողջ ստրատեգիայի հաջողությունը: Այդ խնդրի իրագործումը համակուսակցական, համաժողովրդական կարևորագույն գործ է, երկրի ամբողջ կյանքի նորացման պրոցեսի անկապտելի բաղկացուցիչ մասը, Հոկտեմբերի գործի ուղղակի շարունակությունը:

## *ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ*

## *ՈՐՈՇՈՒՄԸ*

# ՍՄԿԿ ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ XIX ԿՈՆՖԵՐԱՆՍԻ ԳՈՒՄԱՐՄԱՆ ՄԱՍԻՆ

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումը որոշում է.

1. Սովետական Միության կոմունիստական կուսակցության համամիութենական XIX կոնֆերանսը գումարել 1988 թվականի հունիսի 28-ին Մոսկվայում, Կրեմլի Համագումարների պալատում:

2. Հաստատել կոնֆերանսի հետևյալ օրակարգը.

1. ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումների իրականացման ընթացքը, տասներկուերորդ հնգամյակի առաջին կեսի հիմնական արդյունքները և կուսակցական կազմակերպությունների խնդիրները վերակառուցման պրոցեսի խորացման ուղղությամբ:

2. Կուսակցության ու հասարակության կյանքի հետագա դեմոկրատացման միջոցառումները:

3. Սահմանել ՍՄԿԿ XIX համամիութենական կոնֆերանսի ներկայացուցչության նորման. մեկ պատգամավոր կուսակցության 3780 անդամից, ի նկատի ունենալով կոնֆերանսի պատգամավորներին ընտրել փակ (գաղտնի) քվեարկությամբ, միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմների, կուսակցության երկրամասային, մարզային կոմիտեների պլենումներում: Ուկրաինայի, Բելոռուսիայի, Ուզբեկստանի և Ղազախստանի կոմկուսներից պատգամավորների ընտրությունները անցկացնել կուսակցության մարզային կոմիտեների պլենումներում:

Սովետական բանակի, ռազմածովային նավատորմի, ներքին ու սահմանապահ զորքերի զորամասերի կուսկազմակերպություններից ՍՄԿԿ համամիութենական XIX կոնֆերանսի պատգամավորները նույնպես ընտրվում են կոմկուսների կենտկոմների, կուսակցության երկրկոմների ու մարզկոմների պլենումներում, մյուս պատգամավորների հետ միասին:

Սովետական բանակի ու ռազմածովային նավատորմի արտասահմանում գտնվող զորամասերի կուսակցական կազմակերպությունների անդամ կոմունիստները ՍՄԿԿ համամիութենական XIX կոնֆերանսի պատգամավորներին ընտրում են համապատասխան զորամիավորումների կոնֆերանսներում:

Պատգամավորների ընտրությունները անցկացնել 1988 թ. ապրիլ-մայիսին:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն կուսակցական կազմակերպություններին կոչ է անում համամիութենական կոնֆերանսի նախապատրաստումն անցկացնել գաղափարաքաղաքական և կազմակերպական բարձր մակարդակով, կուսակցական շարքերի հետագա համախմբման, կուսակցության ու ժողովրդի միասնության ամրապնդման նշանաբանով, հեղափոխական հասարակական վերափոխումների՝ երկրում տեղի ունեցող պրոցեսի խորացման նշանաբանով:

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՈՐԱԿԱՊԵՍ ՆՈՐ ՎԻՃԱԿԻ ՀԱՍՆԵԼԸ ԵՎ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

**Ս.. ՅԱԿՈՎԼԵՎ**

**ՍՄԿԿ** ԿԵՆՏԿՈՄԻ 1985 ԹՎԱԿԱՆԻ մարտյան պլենումից
ի վեր կուսակցությունը ձեռնամուխ է եղել իրենց նո-
րությամբ ու բարդությամբ, մասշտաբով ու պատասխանատվությամբ ան-
նախադեպ խնդիրների կատարմանը: Հարկ է լինում լուծել շատ անհայտնե-
րով հավասարումներ: Վերակառուցումը, լինելով խորքային պրոցես, առաջ
է ընթանում, բայց ընթանում է հակասականորեն, երբեմն դժվար: Խանգարում
են մի ամբողջ շարք արգելակող գործոններ, որոնցից է նաև սկսված ու առա-
ջիկա ռեֆորմների անբավարար տեսական ապահովվածությունը:
Հետապրիլյան ժամանակաշրջանը բնորոշվում է եռանդուն տեսական
որոնումով, որի պրոցեսում ձևակերպվել և կուսակցության, ժողովրդի կյան-
քի մեջ է մտնում գաղափարների այնպիսի թանձրուկ, որը հասարակական
զարգացումը հարստացրել է բանական ու հուզական առումով: Կուսակցության
ջանքերով ստեղծվում են սոցիալիստական հեռանկարի նորովի ընկալում,
հեղափոխական փոփոխությունների նպատակների ու բնույթի ընդհանուր ըմ-
բռնում: Հասարակագետների առջև Մ. Ս. Գորբաչովի ունեցած ելույթում
առաջադրված է հասարակագիտական հետազոտությունների ծրագիրը ինչպես
մեր շարժման սկզբունքային հարցերի վերաբերյալ, այնպես էլ կիրառական
ասպեկտներով: Մեծ նշանակություն ունի ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը «Կոմու-
նիստ» հանդեսի մասին:
Հոկտեմբերը և ժամանակակից վերակառուցումը, որոնց միջև ընկած է
յոթ տասնամյակ, հաջորդայնորեն ու անխզելիորեն կապված են, միասնա-
կան են գլխավոր խնդրում: Վերակառուցումը՝ արմատական փոփոխություն-
ների ժամանակը, Հոկտեմբերի գործի շարունակությունն է նոր պատմական
պայմաններում: Լինելով հեղափոխական ճշմարտության դրսևորում, հասա-
րակական պրոցեսներում տեղի ունեցած հայտնի լճացումից հետո, վերակա-
ռուցումը պահանջեց օբյեկտիվորեն վերլուծել գործերի վիճակը սովետական
հասարակությունում, համաշխարհային զարգացման մեջ, մարդու և մարդ-
կության կեցության բոլոր արմատական պրոբլեմների վերաբերյալ:
ՍՄԿԿ-ն իր տրամադրության տակ ունի հակասական, բայց և փոխադարձ
կախում ունեցող, շատ բաներում ամբողջական աշխարհի արդի փուլի արմա-
տական գծերի գիտականորեն ստուգված գիտություն, համաշխարհային պատ-
մության բեկումնային փուլում քաղաքակրթության բախտի համար կենսա-
կանորեն կարևոր հարցերի լուծման լավագույն ուղիների, միջոցների ու մե-
թոդների ըմբռնում: Ժամանակի թելադրած պահանջները որոշվում են ոչ մի-
այն աշխարհի այսօրվա և վաղվա դրության պրագմատիկ ասպեկտներով,
այլև այն նոր ձևերով, որոնք ձեռք է բերում երկու սիստեմների պատմական

ՅԱԿՈՎԼԵՎ Ալեքսանդր Նիկոլաևիչ, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածու,
ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար:
Հոդվածի հիմքում դրված է ՍՍՀՄ ԳԱ նախագահության հասարակական գիտությունների
սեկցիայի նիստում կարդացված զեկուցումը:



համամրցությունը գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում՝
միմյանց կապակցելով սոցիալական առաջադիմության ներհասարակական ու
ինտերնացիոնալ հակասությունները:
Առաջադրված են նոր քաղաքական մտածողության կոնցեպցիան ու մե-
թոդոլոգիան, որոնք հիմնված են արդի պայմաններում դասակարգայինի ու
համամարդկայինի դիալեկտիկայի վերլուծության վրա, այն բանի վրա, որ
միայն սոցիալիզմը՝ բոլոր հեղափոխական, առաջադիմական, դեմոկրատա-
կան ուժերի հետ դաշնակցած, ունակ է պահպանելու և բազմապատկելու քա-
ղաքակրթության հումանիստական արժեքները, պատմական նախաձեռնու-
թյուններ հանդես բերելու հասարակական առաջադիմության գլխավոր ուղ-
ղություններում: Առաջադրված են սոցիալիզմի ներքին պրոգրեսի և ամբողջ
համաշխարհային զարգացման բարդ դիալեկտիկական փոխադարձ կապերի
մասշտաբային հարցեր:
Հիմնականում և գլխավորում ստեղծվել է երկրի սոցիալ-տնտեսական
զարգացման արագացման և այդ հիման վրա հասարակության որակապես
նոր վիճակի նվաճման գաղափարատեսական պլատֆորմը: Հեղափոխական
վերակառուցման հատիկը ժողովրդական հողի մեջ նետվել էր հենց այն ժա-
մանակ, 1985 թվականի ապրիլին: Այն ծլարձակել է սոցիալիզմի նորացման
ծրագրի իրականացման համար մղվող մասսայական պայքարով:
Արագացման կոնցեպցիան ոչ միայն և ոչ այնքան այն հարցի պատաս-
խանն է, թե ինչպես բարձրացնել տնտեսական աճի տեմպերը: Դա գործուն
ուղիների ու միջոցների որոնում է, որպեսզի տեսանելի հեռանկարում արժա-
նի պատասխան տրվի ժամանակի մարտահրավերին, որպեսզի սոցիալիստա-
կան հասարակությունը համաշխարհային առաջադիմության մեջ իրականում
դառնա ամբողջ առաջավորի ու մարդկայինի մարմնավորումը, սոցիալական
արդյունավետության օրինակ:
Սոցիալիզմի նյութական և հոգևոր պոտենցիալի աճի հետ զուգընթաց
առաջին պլան են մղվում զարգացման որակի հարցերը: Ինչպե՞ս ամենից ա-
վելի նպատակահարմար տնօրինել նոր հնարավորությունները, որտե՞ղ ամե-
նից լավ կիրառել դրանք: Եվ որակական ինչպիսի՞ չափանիշներով չափել
զարգացումը հեռանկարի համար:
Դրանց պատասխանելու համար մենք ընդհանրապես պատրաստ չգտնվե-
ցինք՝ ո՛չ գործնականորեն, ո՛չ տեսականորեն: Պատասխանի որոնումները
պետք է զարգացնեն հասարակական օրգանիզմի կենսագործունեության բո-
լոր ոլորտների ամենաբարենպաստ փոխգործողության կոնցեպցիան: Ըստ
երևույթին, հենց սրանում է սոցիալական արդյունավետության պրոբլեմի
լուծումը:
Եվ այս համատեքստում արագացումը սոցիալիստական արարման գոր-
ծում ամենաբարդ մաներներից մեկն է, որը պահանջում է շրջադարձ դեպի
խիստ գիտական սոցիալական մտածողություն: Արագացումը նպատակամղ-
ված չէ էկոնոմիկայի ինչ-որ խթանման՝ որպես ինքնանպատակ, դա դինամիկ
դառնալու արհեստական կարգադրություն չէ հասարակությանը: Արագացման
կոնցեպցիան հասարակության զարգացման արդի փուլի օբյեկտիվ պահանջ-
ների տեսական ու գործնական արտահայտությունն է, որն ուղղված է սո-
ցիալիզմի արդյունավետ նորացմանը նրա բոլոր՝ բազիսի և վերնաշենքի, սո-
ցիալական ոլորտի ու կուլտուրայի, ամբողջ հասարակական կյանքի մակար-
դակներում: Հենց դա էլ նոր որակի ձեռքբերումն է:
Սոցիալական քաղաքականության նկատմամբ նոր հայացքը, կոնկրե-
տացնելով մարքս-լենինյան մտքի հումանիստական ավանդույթը, մեծապես
որոշում է կուսակցական ստրատեգիայի սոցիալ-տնտեսական, հոգևոր, բա-
րոյական գերակայությունների ժամանակակից համակարգի նորությունը.
Արժեքային կոորդինատների այս նորացված համակարգում ռեալ կերպով
կենտրոնական տեղում առաջ են քաշվում մարդը՝ որպես սոցիալիստական
առաջադիմության նպատակ և մարդկային գործոնը՝ որպես վճռական ուժ:
էկոնոմիկայի, գիտության, մարդկանց նյութական բարեկեցության, գի-
տակցության, զանգվածների կուլտուրայի փոխադարձ կապն այժմ այնքան է
խորացել, որ այդ ոլորտներից որևէ մեկի հետ մնալը անհապաղ ազդում է
մյուսների վրա, խախտում ընդհանուր շարժման ռիթմը: Տնտեսականի, սո-

հասարակական կազմակերպությունների սերտ համագործակցությամբ կոլեկտիվում ստեղծել առողջ բարոյահոգեբանական մթնոլորտ: Այս հարցերի լուծմանն ուղղված սիստեմատիկ, հետևողական աշխատանքը, կուսակցական կոմիտեում և սկզբնական կուսկազմակերպություններում դրանց գործարար քննարկումը, ամենօրյա աշխատանքի արդյունքների վերլուծությունը, թերությունների բացահայտումը հանդիսացան գործուն միջոցներ ռիթմիկ աշխատանքի ապահովման, պլանային առաջադրանքների կատարման ու գերակատարման համար: Իրավիճակի բարելավմանը մեծ չափով նպաստեցին կուսակցական ազդեցության ուժեղացումը արտադրության ներքին օղակներում, կոմունիստների ուժերի ճիշտ տեղաբաշխումը: Այժմ ֆաբրիկայի 19 բրիգադներում ստեղծված են կուսակցական խմբեր, հաստատված են կուսկազմակերպիչներ: Կոմունիստների 80 տոկոսն աշխատում է անմիջականորեն արտադրությունում:

Կուսակցական, աշխատանքային ու կատարողական կարգապահության բարձրացումն, իհարկե, խիստ կարևոր է, բայց, հասկանալի է, դրանք բավական չեն արտադրական բոլոր խնդիրների լուծման համար: Ուստի և քաղաքային կոմիտեի ակտիվ աջակցությամբ ֆաբրիկայի ղեկավարությունը ձեռնամուխ եղավ կոլեկտիվի սոցիալական հարցերի կարգավորմանը: Արտադրական նոր մասնաշենքերի կառուցմամբ զգալիորեն բարելավվեցին բանվորների աշխատանքային պայմանները, նոր մեքենասարքավորումների տեղադրմամբ ապահովվեց աշխատանքի բարձր արտադրողականություն, նոր հանրակացարանների և սոցիալական նշանակության այլ օբյեկտների շահագործմամբ էապես լավացան կոլեկտիվի մեծ թվով բանվորների բնակարանային և կենցաղային պայմանները: Իսկ արդյունքում տնտեսական լավ ցուցանիշներն են. 1986 թ. և ընթացիկ տարվա անցած ժամանակաշրջանի պլանային պարտավորությունները կատարվել են լիովին, շուրջ 13 տոկոսով բարձրացել է մեքենասարքավորումների օգտագործման գործակիցը, եկամուտներն աճել են 95 տոկոսով, կրճատվել է կադրերի հոսունությունը. այն 1985 թ. 16-ի փոխարեն 1987 թ. առաջին եռամսյակում կազմեց 1,6 տոկոս:

Անտարակույս, այսօր էլ լուսաշինցիների կոլեկտիվում կան դժվարություններ, բայց ձեռք բերված արդյունքները իրավունք են տալիս հուսալու, որ դրանք նույնպես հաջողությամբ կհաղթահարվեն:

Վստահության արդարացման լավագույն օրինակ է նաև լոկոմոտիվային դեպոյի պետ Հ. Հակոբյանի, ճկող հաստոցների գործարանի, կահույքի ֆաբրիկայի դիրեկտորներ Հ. Հարությունյանի, Ս. Ունուպօղլյանի գործունեությունը: Նրանք, ճիշտ ընկալելով կուսակցության ժամանակակից պահանջները, կարողանում են համախմբել կոլեկտիվը, լուծել տնտեսական ու սոցիալական նշանակության կարևոր շատ հարցեր:

Ավելի կոնկրետ օրինակ: Խոշորապանել տնաշինական գործարանը չէր կատարում արտադրական առաջադրանքները: Ղեկավարության գործունեությանը պակասում էր կազմակերպվածությունը: Նախկին դիրեկտորը չէր կարողանում ընթանալ վերակառուցման արդի պահանջներին համաքայլ: Անհրաժեշտ եղավ նրան փոխարինել: Դիրեկտոր նշանակվեց շինարարների կոլեկտիվում երկար տարիներ աշխատած, այդ գործի հմուտ մասնագետ Բ. Նաքաթյանը: Նա կարողացավ խելամտորեն համագործակցել սկզբնական կուսկազմակերպության, նրա բյուրոյի հետ, համախմբել կոլեկտիվը, ուժեղացնելով պահանջկոտությունը, բարձրացնել ենթակաների պատասխանատվությունը: Տնտեսական նոր մտածողությունը դարձավ նրա գործելակերպի ելակետը: Այդ ամենի արդյունքը եղավ այն, որ բարելավվեց գործերի վիճակը, ինչպես ասում են, ձեռնարկությունը շտկեց մեջքը:

Այդ դրական տեղաշարժերի շուրջ հանգամանորեն խոսվեց քաղկոմի բյուրոյի նիստում, որտեղ քննարկվում էր դիրեկտոր Բ. Նաքաթյանի հաշվետվությունը: Միաժամանակ նշվեց, որ բոլոր պրոբլեմները չէ, որ լուծվել են, բոլոր դժվարությունները չէ, որ հաղթահարվել են: Ձեռնարկության ղեկավարության, կուսկազմակերպության, մասնագետների ուշադրությունը հրավիրվեց հատկապես արտադրական հզորությունների ընդլայնման, թողարկվող արտադրանքի որակի բարելավման հարցերի վրա:

Այս օրինակները եզակի չեն: Այսօր քաղաքի թե՛ ժողովրդական տնտեսության բնագավառում, թե՛ այլ ասպարեզներում կադրային թարմ հոսքը ստեղծում է հաստատուն նախադրյալներ աշխատանքում շոշափելի հաջողություններ ակնկալելու համար: Ի դեպ, 70 տոկոսով նորացվել և թարմացվել է կուսակցության քաղաքային կոմիտեի և ազատված կուսկազմակերպությունների քարտուղարների կազ-



մը: Իսկ նորաստեղծ շրջանային կոմիտեների և շրջանային սովետների գործկոմների ապարատները համալրվել են հիմնականում երիտասարդ կադրերով: Քաղաքային և շրջանային կոմիտեների պրակտիկայում հաղթահարվել են կադրերի անհարկի տեղափոխման դեպքերը:

Կուսակցության XXVII համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունվարյան և հունիսյան պլենումների պահանջներով առաջադրված նոր մոտեցումները, անցումը տնտեսավարման նոր մեթոդներին, տնտհաշվարկը, ինքնաֆինանսավորումը գործնական հողի վրա են դրել արտադրության կազմակերպման դեմոկրատացման և այդ առնչությամբ ձեռնարկությունների, արտադրամասերի, տեղամասերի ղեկավարների, վարպետների և բրիգադավարների ընտրովիության հարցը: Քաղաքի մի շարք ձեռնարկությունների և կազմակերպությունների առանձին օղակներում անցկացվել են ղեկավարների ընտրություններ: Ընտրովիության պայմաններում են նշանակում ստացել տրիկոտաժի արտադրական միավորման գլխավոր դիրեկտորը, արտադրամասերի և տեղամասերի պետերը՝ բամբակագործվածքային, «Հայէլեկտրակոնդենսատոր» արտադրամիավորումներում, Լուկաշինի անվան մանվածքային ֆաբրիկայում, մի շարք վարպետներ և բրիգադավարներ՝ այլ ձեռնարկություններում: Մեկից ավելի թեկնածուների քննարկմամբ ընտրվեց ՀԼԿԵՄ Շիրակի շրջկոմի առաջին քարտուղարը:

Անշուշտ, այդ պրակտիկան առաջիկայում է՛լ ավելի կընդլայնվի և կզարգանա: Այս հարցում մենք կարևորում ենք մի հանգամանք: Արդեն ղեկավարների՝ կյանքի ուղեգիր ստացած մրցութային ընտրությունները, գաղտնիք չէ, նաև կարող են սասանել այն կադրերի հեղինակությունը, ովքեր դուրս կմնան մրցույթից: Որպեսզի այս գործում չլինեն նման մտայնություններ և բացառվեն սխալները, մենք ձգտում ենք ընտրությունների շուրջ ստեղծել բարոյահոգեբանական առողջ մթնոլորտ: Ինչպե՞ս է դա արվում. նախ՝ սկզբնական կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունները կոլեկտիվում բացատրական լայն աշխատանք են տանում ընտրությունների դեմոկրատական բնույթի, նրա էության և նպատակի մասին, իսկ ապա՝ ժողովում, նախքան ընտրությունների անցկացումը, հանգամանորեն պարզաբանվում է այն հարցը, որ մրցույթից դուրս մնալը երբեք էլ չի նշանակում տվյալ անձի հեղինակազրկում, որ տվյալ ընկերոջ թեկնածության առաջադրման բուն փաստը ինքնին նշանակում է նրա հեղինակության բարձրացում:

Լենինականի կուսակցական կազմակերպությունները լավ են գիտակցում, որ այժմյան ժամանակը բարդ լուծումների, կոնկրետ գործերի ու գործողությունների ժամանակ է: Առաջ ընթանալու համար հարկավոր է, որպեսզի յուրաքանչյուրն իրեն պատասխանատու զգա այն բանի համար, ինչ տեղի է ունենում այժմ և ինչ պահանջում է կուսակցությունը: Բայց, ցավոք, դեռևս բոլորը չէ, որ հասկացել են այս իրողությունը: Քաղաքի տարբեր ձեռնարկությունների և կազմակերպությունների առանձին ղեկավարներ ապրում ու գործում են հին պաշարով՝ կարծելով, թե պաշտոնն, ինքնին, կապահովի հեղինակություն: Եվ հարկ եղավ նրանց ասել դառը ճշմարտությունը, ճշմարտությունն այն մասին, որ նման մտայնությունը ոչ այլ ինչ է, եթե ոչ բյուրոկրատիզմ: Անցած մեկ և կես տարում կառավարման ժամանակակից պահանջները չբավարարող 21 ղեկավար կադրեր ազատվել են զբաղեցրած պաշտոնից: Ավելի վատն այն է, երբ ղեկավար աշխատողը համապատասխան եզրակացություն չի հանգում իր հասցեին արված քննադատությունից՝ դրա նկատմամբ դըրսևորելով անպատասխանատու վերաբերմունք:

Դեռևս 1983 թ. քաղկոմի բյուրոն քննարկելով «Կուսակցական և պետական կարգապահության դրվածքը № 41 պրոֆտեխնիկական ուսումնարանում» հարցը, նշել էր մի շարք լուրջ թերություններ ուսումնարանի դիրեկտոր Վ. Մկրտչյանի աշխատանքի ոճում: Ուսումնարանի սկզբնական կուսկազմակերպությունը ժամանակին քննարկեց քաղկոմի բյուրոյի որոշումը և դիմեց որոշ ձեռնարկումների՝ վիճակը շտկելու համար: Սակայն հետագայում մոռացության տրվեցին և՛ քաղկոմի բյուրոյի, և՛ սկզբնական կուսկազմակերպության որոշումները: Հետևանքը եղավ այն, որ ուսումնարանում սկսեցին ավելանալ անօրինականությունները: Այսպիսի պայմաններում հնարավոր դարձան 30 սովորողների հավելագրումը 1986 թ. ընդունելության պլանում, բացակայությունների մեծ թիվը, անկազմակերպվածությունը կոլեկտիվում և այլ խախտումներ: Քաղկոմի բյուրոն, անդրադառնալով ուսումնարանի աշխատանքի հարցին, ՍՄԿԿ անդամ Վ. Մկրտչյանին հեռացրեց դիրեկտորի պաշտոնից և նրան հայտարարեց խիստ նկատողություն՝ գրանցելով հաշվառման քարտում:

Նման փաստերը հանգեցնում են այն համոզման, որ չնայած գործնական ու բարոյական բարձր հատկանիշներով օժտված կադրերի մեծ ջոկատի առկայությանը, չնայած կադրերի ընտրության և տեղաբաշխման ասպարեզում մեր ձեռքբերումներին, այնուամենայնիվ, այս գործում փոքր սայթաքումն անգամ որոշակի բացասական հետք է թողնում: Այդպես ստացվեց, օրինակ, մեզ մոտ՝ տրիկոտաժի արտադրամիավորման, կոշիկի № 1, 9 ֆաբրիկաների, տնաշինական գործարանի դիրեկտորների նշանակման գործում: Ստիպված էինք հետագայում աշխատանքից նրանց ազատել և ենթարկել կուսակցական պատասխանատվության:

Նման դասերը զգաստացնում և ստիպում են միշտ հիշել, որ կարևորը ոչ թե այս կամ այն դիրեկտորին փոխելն է, այլև այն, թե նորը ինչքանով է տարբերվում նախորդից՝ իր հասունությամբ, կարողություններով ու ձեռներեցությամբ: Այստեղ խորհելու առիթները շատ են: Հայտնի է, որ երբ այս կամ այն կազմակերպության, աշխատանքի տվյալ բնագավառի ղեկավարման պոստում հայտնվել է գործի համար անհամապատասխան անձ, նա իր ապարատը համալրում է ըստ իր ոճի ու ճաշակի մարդկանցով: Իսկ նման փաստերին օբյեկտիվ և սուր կերպով արձագանքում է, առաջին հերթին, աշխատավորությունը:

Այո՛, հասարակական կարծիքը բավական սուր բարոմետր է: Այդ հանգամանքը յուրաքանչյուր ղեկավարից պահանջում է խստապահանջություն ցուցաբերել սեփական անձի նկատմամբ: Այս հարցում կարևոր է ամեն ինչ. և՛ աշխատանքը, և՛ վարքագիծը, և՛ կենցաղը: Մի խոսքով, ղեկավարի բարոյական նկարագիրը ոչ մի տարակուսանք չպետք է հարուցի: Իսկ այդ նկարագրի դրական իմաստով ամբողջացման գործում մենք դեռևս զգալի անելիքներ ունենք: Խոսքը նրանց դաստիարակության, անցանկալի գործողություններից զերծ պահելու, գաղափարապես զինելու մասին է:

Վերջերս, քաղաքային կոմիտեի պլենումում քննարկեցինք ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունվարյան պլենումի որոշումների կատարման ասպարեզում քաղաքի կուսակցական կազմակերպությունների խնդիրները: Այնտեղ խոր վերլուծական և հանգամանալից խոսակցություն ծավալվեց կադրային աշխատանքում տեղ գտած վերոհիշյալ թերությունների և բացթողումների մասին: Մենք այսօր անհանգստանում ենք, որ առանձին բնագավառների ղեկավարների որակական կազմի բարելավման գործում առկա են ստվերոտ կողմեր: Պլենումը կադրային քաղաքականության վերակառուցման առաջնահերթ խնդիրը համարեց ռեզերվի հետ տարվող կենդանի աշխատանքը, դրա կատարելագործումը այն հաշվով, որպեսզի հաղթահարվեն կադրերի ընտրության նկատմամբ տեխնոկրատական մոտեցման դրսևորումները, որպեսզի ստեղծվեն հնարավորություններ ղեկավար աշխատանքի առաջ քաշելու նաև առաջավոր բանվորների և անկուսակցականների, որպեսզի այդ գործում ևս հետևողականորեն իրականացվեն կուսակցության ազգային քաղաքականության պահանջները: Վերջին հաշվով, մեր ձգտումն է հասնել այն բանին, որ կենսագործունեության բոլոր ասպարեզներում աշխատանքի յուրաքանչյուր օղակ գլխավորեն գաղափարապես հասուն, կուսակցությանն ու համաժողովրդական գործին նվիրված, ազնիվ, սկզբունքային, նորովի մտածող, պրպտող ու գիտակ մարդիկ:

Ղեկավարի ակտիվության ու գործարարության չափանիշ է արտադրական խնդիրների լուծումը: Տնտեսական շատ ղեկավարներ և կուսկազմակերպությունների քարտուղարներ կարողացել են մոբիլիզացնել կոլեկտիվի ուժերը և արդյունավետ ու հստակ աշխատանքով ապահովել արտադրության համաչափությունը, կանխել գրոհայնությունը: Դրա շնորհիվ քաղաքի արդյունաբերության աշխատողները, ամբողջությամբ վերցրած, ընթացիկ տարվա առաջին հինգ ամիսներին թողարկեցին 3,5 միլիոն ռուբլու արտապլանային արտադրանք: Ընդ որում նախորդ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ աճը կազմեց 4,9 տոկոս: Որոշ առաջընթաց է նկատվում արտադրանքի պետական ընդունման անցած ձեռնարկություններում:

Եվ այնուամենայնիվ, չնայած այդ դրական տեղաշարժերին, դեռևս իրեն զգացնել է տալիս էքստենսիվ զարգացման իներցիան. յուրաքանչյուր հաջողություն ձեռք է բերվում մեծ դժվարությամբ: Անցած տարի, օրինակ, հինգ ձեռնարկություն չկատարեց արտադրանքի իրացման պլանը: Ընթացիկ տարվա առաջին հինգ ամիսներին հատկապես թերացան և երկրին զգալի պարտք մնացին կոմպրեսորների գործարանի և դարբնոցամամլիչային արտադրամիավորման կոլեկտիվները: Առանձին



ձեռնարկություններում դեռևս արմատական բեկում չկա արտադրանքի որակի բարելավման գործում: Նրանց ղեկավարների մոտ դժվար է ձևավորվում վերակառուցման և արագացման հիմք հանդիսացող տնտեսական մտածողությունը:

Հասարակության վերափոխման նյութական հիմքը, վերակառուցման գլխավոր օղակը էկոնոմիկան է: Հետևաբար, ամեն մի ղեկավար, առավել ևս կոմունիստը, պետք է ճիշտ ընկալի այն իրողությունը, որ կուսակցական մարմինները, իրեն վստահելով արտադրությունը գլխավորելու ծանրակշիռ, պատվավոր և պատասխանատու գործը, միաժամանակ մեծ հույսեր են կապում նրա հետ, հանդես բերում ամենայն պահանջկոտություն: Այս առնչությամբ պետք է առավել սթափ մտածեն և իրենց գործունեությունը վերակառուցեն վերը նշված ձեռնարկությունների դիրեկտորներ Ֆ. Հովհաննիսյանը, Հ. Գալստյանը և կուսբյուրոյի քարտուղարներ Մ. Անտոնյանն ու Մ. Թորոսյանը:

Նրանց և այս կամ այն հարցում թերացող մյուս ղեկավարների ուշադրությունը հրավիրում ենք այն բանի վրա, որ արտադրությունում վերակառուցման էությունը կազմում են լճացման երևույթների վճռական հաղթահարումը, գիտատեխնիկական առաջադիմության արագացումը, աշխատանքի արտադրողականության անընդհատ բարձրացումը, արտադրանքի որակի բարելավումը, աշխատանքային և նյութական ռեսուրսների խնայողությունը, տնտեսավարման ու կառավարման կատարելագործումը, պայքարը անկազմակերպվածության և անպատասխանատվության դեմ: Հետևաբար, նրանք պարտավոր են գտնվել կուսակցության այս պահանջների կատարման մակարդակի վրա:

Այլապես, ի՞նչ վերակառուցման մասին կարող է խոսք լինել, երբ ձեռնարկությունն այսօր էլ շարունակում է գրոհային աշխատանքը կամ դոփում է տեղում: Ընթացիկ տարվա առաջին եռամսյակի վերջում քաղկոմը այդ կապակցությամբ ուսումնասիրեց մի շարք արդյունաբերական ձեռնարկությունների գործունեությունը: Պարզվեց, որ առանձին կոլեկտիվներ վերջին տասնօրյակում թողարկում են ամսվա պլանի 42—46 տոկոսը: Այդ հանգամանքը դառնում է արտադրանքի ցածրորակության պատճառ: Միայն թեթև արդյունաբերության ձեռնարկությունները դրա համար վճարել են մեկ միլիոն ռուբլու վնասատուգանք:

Արտադրանքի որակի հարցը հատկապես լուրջ պրոբլեմ է էլեկտրակենցաղային և կոմպրեսորների գործարաններում: Կոմպրեսորների գործարանի շատ արտադրատեսակներ հնացած են, չեն համապատասխանում սառնարանաշինության այսօրվա պահանջներին: Փաստորեն արտադրանքի գրեթե մեկ երրորդը չունի համապատասխան սպառողներ: Անցած տարի, օրինակ, արտադրանքի 24 տոկոսը սպառողները խոտանել էին և թերությունները վերացնելու համար հարկ եղավ լրացուցիչ ծախսել 21,7 հազար ռուբլի: Կուսքաղկոմը և Շիրակի շրջկոմը վերադաս մարմինների հետ միասին միջոցներ են ձեռնարկում այս գործարանի վիճակը արմատապես կարգավորելու համար:

Այսօր կադրերի առջև ծառացած են ավելի բարդ, որակապես նոր խնդիրներ, որոնց լուծումը պահանջում է ոչ միայն եռանդ, այլև խոր գիտելիքներ: Արդյոք մեր բոլո՞ր կադրերն են բավարարում այս պահանջը: Ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառներում աշխատող 4.250 ինժեներների շարքում 810-ը չունեն համապատասխան կրթություն, այսպես կոչված՝ պրակտիկներ են: Նրանք արդյունաբերությունում կազմում են 18,6 տոկոսը, տրանսպորտում՝ 32,3, կապի ձեռնարկություններում՝ 40,2 տոկոսը: Ավելի կոնկրետ՝ վիճակը բարվոք չէ հացի, մսի պահածոների կոմբինատներում, գարեջրի ածիկի գործարանում: Մեզ պակաս անհանգստություն չի պատճառում նաև այն, որ քաղաքի կուլտուր-լուսավորական հիմնարկների ղեկավարների զգալի մասն իր ընդհանուր կարողություններով ընդունակ չէ խորությամբ ընկալելու և իրագործելու կուսակցության առաջադրած բարդ խնդիրները:

Կուսակցության պահանջներին համապատասխան, կադրային աշխատանքի վերակառուցման ընդհանուր համակարգում մենք պարտավոր ենք ուշադրության կենտրոնում պահել կին կադրերի լիարժեք ռեզերվի ստեղծման և նրանց առաջքաշման հարցը: Բանն այն է, որ կին ղեկավարները քաղաքի արդյունաբերական ձեռնարկություններում կազմում են չնչին տոկոս: Բարվոք չէ վիճակը նաև այլ բնագավառներում: Քաղաքի հանրակրթական, գիշերօթիկ և երաժշտական դպրոցների 53 դիրեկտորներից միայն 5-ն է կին:

Ժամանակակից հասարակական զարգացումն առանձնանում է արտակարգ դինամիկությամբ: Եվ այդ պայմաններում անտեսել հին պատկերացումների, ստերեոտիպների և լճացման դեմ հարձակողական պայքարը՝ նշանակում է կորցնել զարգացման պրոցեսների զարկերակը, վերակառուցման բուն ոգին վերածել սոսկ լոզունգի: Այդ առնչությամբ էլ, ինչպես պահանջում է կուսակցությունը, բոլոր դժվարությունների հաղթահարման, եղած թերությունների բացահայտման ու վերացման, կադրերի դաստիարակության հատու և օգտակար զենքը մենք դարձրել ենք քննադատությունն ու ինքնաքննադատությունը: Եվ ինչպես դիպուկ կերպով նշել է Մ. Ս. Գորբաչովը, «դրանք մեր ապրելակերպի նորմերն են, և հնարավոր չէ պատկերացնել դեմոկրատիա, առանց քննադատության: Բայց քիչ է խոսել քննադատության և դեմոկրատիայի մասին, մարդը, առավել ևս կոմունիստը, և, հատկապես, ղեկավարը պետք է դրա ներքին և ազնիվ պահանջն ունենա»: Ուստի այժմ քաղաքի կուսակցական կազմակերպությունները քննադատությունն ընկալելու կուլտուրա են դաստիարակում մարդկանց մեջ:

Կուսակցության Լենինականի քաղաքային և շրջանային կոմիտեներն այսօր իրենց կարևոր խնդիրն են համարում թափանցել արտադրության ամենաստորին օղակները, տեսնել ամեն ինչ, խորանալ կադրերի գործունեության մեջ, ուղղություն տալ նրանց: Ղեկավարվելով ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունվարյան և վերջերս տեղի ունեցած հունիսյան պլենումների որոշումներով՝ մենք մշտական ուշադրության կենտրոնում ենք պահում կադրերի գաղափարական ու քաղաքական դաստիարակությունը այն հաշվով, որպեսզի մարքս-լենինյան աշխարհայացքին, կառավարման արդիական պահանջներին ու մեթոդներին տիրապետելը, խոսքի և գործի միասնությունը, մարդկանց հետ տարվող կենդանի աշխատանքի ըստ ամենայնի զարգացումը յուրաքանչյուր ղեկավար աշխատողի համար դառնան կենսական պահանջմունք:

---

# ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ ՈԳԻՆ

Ս. ՍԻՄՈՆՅԱՆ

ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ՊԱՆԾԱԼԻ ՅՈԹԱՆԱՍՈՒՆԱՄՅԱԿԸ սովետական ժողովուրդը դիմավորում է երկրում իրականացվող հեղափոխական վերակառուցման պայմաններում, որի նպատակն է արագացնել սոցիալիստական հասարակության առաջընթացը: 1985 թվականի ապրիլից է սկսվել վերակառուցումը, երբ ընդունվեց սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու՝ երկրի բախտի համար վճռական կուրսը: Կուսակցության առաջադրած իրենց բնույթով հեղափոխական նոր ստրատեգիական նպատակներին հասնելու համար անհրաժեշտ է հասարակության կյանքի բոլոր կողմերի վերափոխման անդուլ աշխատանք: Եվ ՍՄԿԿ Կենտկոմը կուսակցությանն ու ժողովրդին նպատակամղում է մշտական որոնման, որը բացառում է այնպիսի վիճակը, երբ, ազատագրվելով մեկ դոգմայից, հնարավոր լինի ընկնել այլ դոգմաների գերիշխանության տակ:

Կուսակցությունը խիստ գնահատական տվեց լճացման միտումներին, մեր հասարակության մեջ լենինյան սկզբունքներից կատարված շեղումներին: Կուսակցությունը վճռականություն ցուցաբերեց ըմբռնելու բացասական պրոցեսների պատճառները և մշակելու այնպիսի միջոցառումներ, որոնք արագացնում են մեր շարժումը, բացառում սխալների կրկնությունը, թույլ են տալիս ընթանալ առաջ, հաստատելով մշտապես ինքնակատարելագործվելու սոցիալիզմին օրգանապես ներհատուկ օրինաչափության իրողությունը:

Ընդամենը երկու տարուց մի քիչ ավելի է, ինչ սկսվել է վերակառուցումը, սակայն ակնհայտ են նրա առաջին արդյունքները, հասարակական մթնոլորտում կատարված փոփոխությունները: Եթե լրիվ չի հաղթահարվել, ապա հիմնովին վերափոխվել է վերաբերմունքը անտարբերության, պասիվության, ծուլության նկատմամբ: Ժողովրդական լայն զանգվածները շահագրգիռ կերպով լծվել են նորացման ստեղծագործական աշխատանքին: Ավելի ու ավելի մեծ չափով են աշխատավոր մարդիկ իրենց զգում կյանքի տերեր, պատասխանատու հարազատ պետության ներկայի ու ապագայի, սոցիալիզմի բախտի համար: Հիրավի, նրանք վերակառուցումն ընկալել են ամբողջ հոգով, որպես իրենց հարազատ գործը: Սովետական երիտասարդությունը խանդավառությամբ ընդունեց կուսակցության առաջադրանքները և միահամուռ ձեռնամուխ է եղել այդ վիթխարի կանխագծումների իրականացմանը: Ինչպես վկայեց ՀամԼԿԵՄ XX համագումարը, վերափոխման հսկայածավալ աշխատանքում երիտասարդությունը մտցնում է պատանեկան ավյուն ու եռանդ, անձնվեր պատրաստակամություն է ցուցաբերում իր ուսերին առնելու այն ամենամեծ, ամենապատասխանատու գործերը, որ մեզ սպասում են XXI դարի նախաշեմին: Իրոք, երիտասարդներն են շարունակելու կուսակցության սկսած վերակառուցման գործը:

Թափանցելով հասարակության խորքը, վերակառուցումն ընդգրկել է նրա բոլոր խավերը, շարժման մեջ են դրվել ստեղծագործական նոր ուժեր, թեև տակավին չկա այն որակական բեկումը, որին մենք հետևողականորեն ձգտում ենք (դրա համար անշուշտ ժամանակ է հարկավոր), բայց քաղաքական, հոգևոր ու բարոյական մեծ նշանակության վերափոխումներ կատարվում են:

Հասարակության կյանքում իրականացվող խոշորագույն վերակառուցման մեջ կուսակցությունն առանձնացնում է այն գլխավոր ուղղությունները, հանգուցային տեղամասերը, որտեղ անհրաժեշտ է առավելագույն չափով կենտրոնացնել ջանքերը: Դրանցից կարևորագույնը էկոնոմիկան է, երկրի հզորության հիմքը: Ժողովրդական տնտեսության մեջ վերակառուցման ամբողջ ընթացքը նպատակամղված է նրա պո-

տենցիալի ուժեղացմանը, քաղաքական և սոցիալական նոր, առավել մասշտաբային խնդիրների լուծման համար պայմանների ստեղծմանը:

Վերակառուցումը էկոնոմիկայի բնագավառում նախ և առաջ տնտեսական հարաբերությունների ամբողջ համակարգի արմատական վերակազմումն է, որն ասպարեզ է բացում աշխատավորական զանգվածների նախաձեռնության և ստեղծագործության համար: Դա դինամիկ զարգացումն է ինտենսիվացման ուղիներով, աճի տեմպերի տոգորումը որակապես նոր բովանդակությամբ: Էկոնոմիկայի բնագավառում իրականացվող արմատական, արագ ու կշռադատված վերակառուցմամբ է մեծապես պայմանավորվում հեղափոխական նորացումը հասարակության կյանքում:

ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումից և կուսակցության XXVII համագումարից հետո անցած ժամանակաշրջանը դարձավ վերակառուցման ծավալուն ծրագրի մշակման, արտադրողական ուժերին, արտադրական հարաբերություններին վերաբերող քաղաքական, տնտեսական և կազմակերպական խոշոր միջոցառումների հիմնավորման ժամանակաշրջան: Այսօր մարդիկ սկսել են սովորել մտածել ու գործել նորովի, կուտակվում է փորձ, մշակվում են տնտեսագիտական մեթոդներ, հետևողականորեն ընդլայնվում են դրանց կիրառման բնագավառները: Այժմ խնդիր է դրվում, շարունակելով վերակառուցման պրոցեսը, կենսագործել այն ամենը նեռդնելու աշխատանքը, ինչ մտահղացվել է, ստուգվել ու փորձարկվել, որի համար այժմ բացված է գործնական իրականացման լայն ճանապարհ:

Օրեցօր ընդլայնվում է խոր վերափոխումների շրջագիծը, տնտեսական շինարարության բոլոր տեղամասերում կատարվում են բազմազան աշխատանքներ: Վերակառուցման ոգեշունչ առավել մեծ չափով է զգացվում կոնկրետ աշխատանքներում ու մասշտաբային արարումներում: Վերակառուցումը տիրաբար մուտք է գործում կոլեկտիվների կյանքի մեջ, փշրում արգելակման մեխանիզմը և հնացած ստերեոտիպները: Տեղի է ունենում տնտեսական իրավիճակի ընդհանուր բարելավում, ծավալվում են դրական միտումները: Օրինակ, անցյալ տարի արդյունաբերության զարգացման տեմպերը ամենաարագն էին անցած հինգ տարում: Առավել մեծ չափերով են դրսևորվում էկոնոմիկայի զարգացման ինտենսիվ գործոնները: Արդյունաբերության մեջ 1986 թվականին աշխատանքի արտադրողականության աճի տեմպերը 1,5 անգամ գերազանցեցին տասնմեկերորդ հնգամյակի միջին տարեկան տեմպերը:

Տեղի են ունեցել դրական վերափոխումներ ժողովրդական տնտեսության այնպիսի ճյուղերի աշխատանքում, որոնք դեռ վերջերս գտնվում էին հետ մնացողների թվում, ինչպես, օրինակ, սև մետալուրգիան, նավթի և ածխի արդյունաբերությունը: Որոշակի դրական փոփոխություններ կան ագրոարդյունաբերական համալիրում: 1986 թվականին ստացվեց վերջին ութ տարում հացահատիկի ամենաբարձր բերքը: Աճում է անասնապահական մթերքների արտադրությունը: Տեղաշարժեր են կատարվում սոցիալական ոլորտում:

Վերակառուցման ընթացքը համգամանորեն քննարկեց ՍՄԿԿ Կենտկոմի այս տարվա հունվարյան պլենումը: Պլենումի որոշումները նշանավորեցին արմատական վերափոխման նոր փուլի սկիզբը, որը տեղի է ունենում երկրի տնտեսական և հասարակական-քաղաքական կյանքի բոլոր ոլորտներում: Սովետական մարդիկ գոհունակությամբ են նշում, որ մեր կյանքում ծագող հակասությունները այժմ լուծվում են գիտականորեն հիմնավորված եղանակով, հրապարակայնության, քննադատության ու ինքնաքննադատության ծավալման պայմաններում:

Հավանություն տալով կուսակցության ստրատեգիական կուրսին՝ Հայաստանի կոմունիստները, հանրապետության բոլոր աշխատավորները ակտիվորեն ներգրավվել են հասարակական կյանքի բոլոր կողմերի վերակառուցմանը: Հանրապետության կուսակցական կազմակերպության աշխատանքում է՛լ ավելի են ուժեղացել ինքնաքննադատությունը, կուսակցական սկզբունքայնությունը, նպատակասլացությունն ու հաստատակամությունը նախատեսված պլանների կատարումն ապահովելու գործում: Ամենուրեք պայքար է ծավալվել գիտատեխնիկական առաջընթացի արագացման, արտադրության արդյունավետության ու արտադրանքի որակի բարձրացման, նյութական և աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման համար: 1986 թ. արդյունքները վկայում են, որ տնտեսական և սոցիալական ոլորտի զարգացման առանձին ուղղություններում ապահովվել է ռեալ արագացում: Արդյունաբերության աշխատողները սահմանված պլանից ավելի թողարկել են 142,8 միլիոն ռուբլու արտադրանք, որը 103,5 մլն ռուբ. գերազանցում է նրանց ստանձնած սոցիալիստական պարտավորությունները: Գրեթե երկու անգամ գերակատարվել է



աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանը: Գերակատարվել են նաև հողագործական և անասնապահական բոլոր տեսակի մթերքների արտադրության պլանները: Ակտիվորեն լուծվում են սոցիալական զարգացման հարցերը:

Կատարվածը իրոք միայն սկիզբն է: Անհրաժեշտ է վճռականորեն ընթանալ առաջ, վերակառուցման գաղափարները վերածել պրակտիկ գործերի: Նկատենք, որ այստեղ դեռևս պետք է հաղթահարել ոչ քիչ դժվարություններ, մանավանդ ամեն ինչ չէ, որ ընթանում է այնպես, ինչպես ցանկալի կլիներ: Մամուլում հրապարակվող տեղեկություններից իմանում ենք, որ նախատեսվածից շատ բան դանդաղ է իրականացվում, իսկ երբեմն էլ կիսատ-պռատ և անհետևողականորեն: Լճացման իներցիան, որը տիպական էր անցյալ տարիներին, դեռևս ամենուրեք չէ, որ հաղթահարված է: Ժողովրդական տնտեսության մի շարք ճյուղերում շարունակվում են խաղաղ գոյակցել, միախառնվել նորն ու իր դարն ապրածը, հինը: Հանրապետության թեթև արդյունաբերության շատ ձեռնարկություններում առաջվա պես թույլ են օգտագործվում արտադրական կարողությունները, չեն կատարվում մատակարարումների պայմանագրային պարտավորությունները, որի հետևանքով չեն կրճատվում պատժատուգանքները, ավելանում են ապրանքանյութական արժեքների գերնորմատիվային մնացուկները և վնասաբեր ու քիչ շահութաբեր արտադրանքի թողարկումը:

Մ. Ս. Գորբաչովը կոմերիտմիության XX համագումարում նշեց, որ մեզ համար բարդ կլինի տասներկուերորդ հնգամյակը և ամենից առաջ մոտակա 2—3 տարիները, երբ անհրաժեշտ է արմատական խոր տեղաշարժերի հասնել ժողովրդական տնտեսության մեջ վերակառուցման յուրաքանչյուր որոշիչ ուղղությունում: Ընթացիկ հնգամյակին առանձնահատուկ տեղ է հատկացվում: Անհետաձգելի խնդիրների լուծման, տնտեսական նոր մեխանիզմի և կառավարման համակարգի մշակման հետ մեկտեղ պետք է դրվի կուսակցության XXVII համագումարի ընդունած երկարաժամկետ ծրագրի կատարման հիմքը:

Արագացումը տնտեսական աճի կայուն օրինաչափության վերածելու համար՝ հարկավոր է լիովին տիրապետել նրա երկարաժամկետ գործոններին, գիտատեխնիկական առաջընթացի նվաճումներին: Պետք է գործով ապացուցել, որ սոցիալիզմն օժտված է անսահմանափակ հնարավորություններով՝ աշխարհում նվաճելու ամենաառաջավոր բնագծերը արդյունավետությամբ, արտադրանքի որակով, աշխատանքի արտադրողականությամբ:

Կուսակցության XXVII համագումարը հստակորեն սահմանեց, որ այսօր գլխավորը վերակառուցման, արտադրական ապարատի տեխնիկական վերազինման կուրսը հետևողականորեն վարելն է: Այդ կուրսը կամպանիա չէ, այլ աշխարհում տեղի ունեցող գիտատեխնիկական հեղաշրջումը երկրի էկոնոմիկայի խոր վերափոխումների հետ օրգանապես շաղկապելու կուսակցության հետևողական անշեղ գիծը: Ժամանակի հրամայականն է՝ համարձակ և հաստատակամորեն շարժվել գիտատեխնիկական առաջընթացի կարևորագույն ուղղություններով:

Այստեղ առաջին հերթին կարևորվում են գիտատար արտադրությունները, այդ թվում մեքենաշինությունը, որակապես նոր հաշվողական տեխնիկայի, առաջադիմական տեխնոլոգիական պրոցեսների, բարձրարտադրողական մեքենաների ու սարքավորումների ամբողջական համակարգերի, նյութերի նոր տեսակների ստեղծումը:

Գիտատեխնիկական առաջընթացի արագացման խնդիրները լուծելու համար առկա է գլխավորը՝ սովետական ժողովրդի ստեղծած գիտական հզոր պոտենցիալը: Փաստ է սակայն, որ հասարակության վիթխարի մտավոր ուժերը բնավ էլ լիովին չեն օգտագործվում: Իրոք, դա ազգային հարստության, մեր հսկայական սեփականության անթույլատրելի վատնում է: Հրամայական պահանջ է ըստ ամենայնի ակտիվացնել գիտական նվաճումների կիրառումը ժողովրդական տնտեսության մեջ:

Սովետական ժողովուրդը հիմնարար գիտություններից ակնկալում է բարձր հատույց, որպեսզի նրանց մշակումները արգասավոր լինեն, հետազոտությունների օգտակար արդյունքները անգործության չմատնվեն տարբեր տիպի հաշվետվություններում և հրապարակումներում: Պետք է անհապաղ գործի դրվի գիտական արտադրանքը:

Արդ, կենսագործվում է հիմնարար, բուհական, ճյուղային գիտության վերակառուցում, դրանց ջանքերի միավորում, մրցողականության սկզբունքների լայն օգտագործում: Ուժեղանում է արտադրողական ուժերի արմատական վերափոխումների

ռակներս կատարված աշխատանքի արդյունքների, այնպես էլ սոցիալիզմի բոլոր նվաճումների վրա: Նա աշխատավորների երբեմնի հնազանդ, նվաստացած զանգվածներին վերածեց կրթված, քաղաքականապես գրագետ ժողովրդի, որը գիտի քաղաքացիական գիտակցականության ու պատասխանատվության գինը:

Ըստ էության սոցիալիստական դեմոկրատիան հասարակության մեջ գոյություն ունեցող կարծիքների, դիրքերի, շահերի արտահայտման ու հաշվառման համապարփակ մեխանիզմ է: Դա կառավարման փորձված միջոց է, որն ընդունակ է ժամանակին արձագանքել մարդկանց պահանջներին, ներգրավելով նրանց քաղաքացիական հարաբերությունների ոլորտը:

Կենտկոմի հունվարյան պլենումում ամենայն որոշակիությամբ շեշտվեց, որ սովետական հասարակության զարգացման արգելակ դարձած շատ դժվարությունների ու վրիպումների համար պատասխանատվություն են կրում կուսակցության ու պետության ղեկավար մարմինները: Կուսակցության այդ սկզբունքային դիրքորոշումը աշխատավորների կողմից արդարացիորեն ընկալվեց որպես սոցիալիզմի ստեղծարար հնարավորությունների բացահայտմանը խանգարող ամեն մի խոչընդոտ վճռականորեն վերացնելու՝ կուսակցության ունակության ու պատրաստակամության արտահայտություն: Դա կուսակցության խիզախության ու հասունության վկայությունն է: Միայն զորեղ, վստահորեն առաջ ընթացող կուսակցությունը կարող է բացահայտորեն ընդունել թերությունները, դրանց մասին խոսել առանց թաքցնելու:

Ջերմորեն հավանություն տալով վերակառուցման կուրսին, սովետական մարդիկ ուզում են վստահ լինել, որ նախանշված ուղիով առաջընթացը կանգ չի առնի, որ շեղումներ չեն լինի: Դա կուսակցության վրա սկսված վերափոխումների անշրջելիության հուսալի երաշխիքների ապահովման պատասխանատվություն է դնում: Հետևողականորեն ձգտելով սոցիալիստական դեմոկրատիայի ընդլայնմանն ու խորացմանը, կուսակցությունը այդպիսի երաշխիքներ ստեղծում է, դրանք դարձնում առավել հաստատուն ու ամուր:

Իրականացվող վերակառուցումը կուսակցության կյանքում պարտավորեցնող օրինակ է սովետական քաղաքական սիստեմի բոլոր օղակներում դեպի դեմոկրատիա վճռական շրջադարձ կատարելու համար: Ժողովրդական դեպուտատների, կառավարման ապարատի աշխատողների, գերատեսչությունների, հիմնարկությունների, ձեռնարկությունների ղեկավարների, հասարակական կազմակերպությունների ակտիվիստների քաղաքացիական պարտքն է նույնքան խստապահանջորեն ու ինքնաքննադատաբար գնահատել սեփական գործունեությունը:

Կուսակցությունը բոլոր միջոցները ձեռնարկում է սովետների եռանդը ձերբազատելու, նրանց ինքնագործունեությունը զարգացնելու համար: Դրան են նպատակամղված նաև ժողովրդական դեպուտատների սովետների ընտրությունների հետագա դեմոկրատացման նոր որոշումները:

Դեմոկրատացման պաթոսով էին տոգորված վերջերս կայացած արհմիությունների ու կոմերիտմիության, ստեղծագործական միությունների, մյուս հասարակական կազմակերպությունների համագումարները: Նրանք կոչված են ծանրակշիռ ավանդ մուծելու վերակառուցման մեջ, ակտիվացնելու աշխատավորների մասնակցությունը սոցիալիզմի կատարելագործման նպատակով ծավալված հիրավի հեղափոխական արարումներին:

Այժմ, երբ էկոնոմիկան լայն ծավալներ է ընդունել, կատարելագործվում է նրա կառավարումը, երկրի առջև սկզբունքորեն նոր խնդիրներ են ծառանում, չափազանց բարձրացել է կադրային պոտենցիալի մակարդակը, որակապես փոխվում է ցենտրալիզմի բովանդակությունը: Ելնելով ստեղծված իրողությունից, կենտրոնը կոչված է ջանքերը բևեռել ժողովրդական տնտեսության ստրատեգիական պրոբլեմների, համապետական շահերի պահպանման վրա, վճռականորեն ազատվելով ստորին օղակների աշխատանքի կանոնակարգումից: Առաջ են մղվում ղեկավարման տնտեսագիտական մեթոդները, որոնք ապահովում են նրա ճկունությունն ու արդյունավետությունը, ամենայն արժեքավորի համակողմանի պաշտպանությունը, ինչ որ հայտ է գալիս զանգվածների շրջանում, աշխատանքային տեղամասերում:

Նման մոտեցումը ենթադրում է կենտրոնական տնտեսագիտական գերատեսչությունների և առաջին հերթին միութենական պետպլանի արմատական վերակառուցում: Վերջինս անհրաժեշտ է կատարել նաև կառավարման ճյուղային ու տերիտորիալ մարմինների գործունեության մեջ: Իրոք, դեմոկրատիզմը պետք է դառնա նրանց ներքին կյանքի նորմը, որոշի ամբողջ աշխատանքի ոճն ու մեթոդները:



Նորովի է դրսևորվում դեմոկրատական ցենտրալիզմի երկրորդ կողմը՝ դեմոկրատիան տեղերում, աշխատավորական կոլեկտիվներում: Մարդկային գործոնի դերի բարձրացման պայմաններում, երբ յուրաքանչյուր կոլեկտիվից ու աշխատողից գործի նկատմամբ ստեղծագործական, շահագրգիռ վերաբերմունք է պետք, էկոնոմիկայի ոլորտում դեմոկրատիան հառնում է իր նոր ձևերով. ինքնակառավարում, ընտրովիություն, արտադրական ու սոցիալական խնդիրների լուծման վրա ներգործելու աշխատավորների ռեալ հնարավորություն: Այս ամենը պահանջում է այստեղ առաջացած ստերեոտիպերի հիմնովին բարենորոգում, հեղափոխական վերափոխում, որոնք արգելակման վիճակի են հանգեցրել էկոնոմիկան:

Կառավարման վերակառուցումը սկսվել է արտադրության հիմնական օղակից՝ ձեռնարկությունից: Լայնամասշտաբ տնտեսափորձերը ուղի հարթեցին էկոնոմիկայի կարևորագույն ճյուղերը տնտեսավարման նոր պայմանների փոխադրելու համար, հիմք նախապատրաստեցին լրիվ տնտհաշվարկի ու ինքնաֆինանսավորման անցնելու համար:

Պետական ձեռնարկության մասին օրենքի նախագծում արտացոլված են կուսակցության տնտեսական ստրատեգիայի սկզբունքները: Այն ձեռնարկություններին լայն հնարավորություններ է ընձեռում և միևնույն ժամանակ նրանց վրա պատասխանատվություն դնում գործունեության արդյունքների համար, լրիվ որոշում տընտհաշվարկի ու կառավարման իրականացման տնտեսագիտական ու իրավական պայմանները:

Հարկ է շեշտել, որ օրենքի նախագիծը շոշափում է աշխատավորական կոլեկտիվների կյանքի արմատական հարցերը, աշխատավորների անձնական շահերը: Այդ փաստաթղթի բովանդակած նոր մոտեցումների պաշտպանության ցայտուն վկայությունն է այն փաստը, որ նրա որոշ կարևորագույն դրույթներ, օրինակ, տնտեսական ղեկավարի ընտրովիության դրույթը, սկսվել է կիրառվել արտադրական կոլեկտիվներում:

Վերակառուցման հաջողությունը պայմանավորված է համոզված, իրազեկ, զանգվածներին ոգևորող և իրենց հետևից տանել կարողացող մարդկանց առկայությամբ: Դա կրկին վկայում է կադրերի հետ տարվող քաղաքական, դաստիարակչական, կազմակերպչական աշխատանքի հսկայական կարևորության մասին: Այժմ, երբ հարկ է լինում դեն նետել այն, ինչին վարժվել էինք տասնամյակներ շարունակ, սովորել ընթացքում, փոխել աշխատանքի եղանակները, առանձնակի արժեք են ստանում այնպիսի հատկանիշներ, ինչպիսին է ամեն տեսակ, ամենաբարդ իրավիճակները կշռադատված վերլուծելու, որոշումների նորությունից չվախենալու, շփոթության մեջ չընկնելու, նույնիսկ բացասական փորձից դրական դասեր քաղելու ունակությունը: Անշուշտ, այս ամենը բարձր պահանջներ է ներկայացնում ղեկավարին, որին պետք է բնորոշ լինեն կուսակցականությունը, պրոֆեսիոնալիզմը, նորի սուր զգացումը, բարոյական վսեմ հատկանիշները, պետության, կոլեկտիվի հոգսերով ապրելու օրգանական պահանջմունքը:

Հոկտեմբերը և վերակառուցումը չնայած յոթ տասնամյակով են բաժանված, սակայն նրանք միասնական են, ամբողջական: Վերակառուցումը, որն ընդգրկում է հասարակական կյանքի բոլոր կողմերը, հեղափոխական գործի շարունակությունն է: Հիրավի, վերակառուցումը ինքնամաքրման ու հիմնարար տեղաշարժերի ժամանակաշրջան է, միաժամանակ և մեր հասարակության մեջ կատարվող պրոցեսների, ինչպես և ամբողջ աշխարհում տեղի ունեցող երևույթների օբյեկտիվ բնութագրման վկայությունն է: Կուսակցության կոլեկտիվ ստեղծագործական միտքը մշակել է երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման և այդ հիմքի վրա հասարակության որակական նոր վիճակի հասնելու նորարարական կոնցեպցիան:

Սոցիալական քաղաքականության նկատմամբ նոր մոտեցումը կոնկրետացնում է մարքս-լենինյան տեսության հումանիստական ավանդույթը, սահմանում սոցիալ-տնտեսական ու հոգևոր արժեքների ժամանակակից համակարգը, որի առանցքը մարդկային գործոնն է:

Կադրերի, նրանց քաղաքական և քաղաքացիական դիրքորոշման գնահատման վճռական չափանիշներն են վերաբերմունքը վերակառուցման նկատմամբ, երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու խնդիրների հանդեպ, ռեալ գործերը դրանց իրականացման ասպարեզում: Կուսակցությունը պաշտպանում է այն աշխատողներին, որոնք ոչ միայն համամիտ են վերակառուցման կուրսին, այլև ակ-

տիվորեն, ստեղծագործաբար ներգրավվել են նորացման պրոցեսի մեջ, իրենց բոլոր ուժերը նվիրաբերում են ընդհանուր գործին:

Վերակառուցման պրոցեսը անխզելիորեն կապված է սոցիալիստական հասարակության սովետական ապրելակերպի բարոյական հիմքերի ամրապնդման հետ: Կուսակցությունն անդուլ պայքարում է իր շարքերում հաստատելու գաղափարական խոր համոզվածություն, երկրի բախտի համար մեծագույն քաղաքական և բարոյական պատասխանատվություն, բոլշևիզմի լենինյան էթիկայի անշեղ հետամտում:

Գոհունակությամբ ենք նշում, որ ապրիլյան պլենումի մշակած կուրսը աշխատավորներն ընկալեցին որպես իրենց կենսական գործը: Կուսակցության մեջ վերածնվող խիստ քննադատությունն ու ինքնաքննադատությունը, քաղաքականության մեջ անկեղծությունը, ստեղծված իրավիճակը շտկելու համար անհրաժեշտ միջոցառումներ մշակելու, առանց հապաղման դրանց իրագործմանը ձեռնամուխ լինելու ունակությունն արժանացել են ժողովրդի լայն պաշտպանությանը: Կուսակցությունը խորապես, լենինաբար իմաստավորեց ընթացիկ ժամանակը, իր որոշումներում միավորեց նպատակների մեծությունն ու հնարավորությունների ռեալիզմը: ՍՄԿԿ XXVII համագումարը դարձավ ճշմարտության մի դաս, որը քաղաքական ու բարոյական անանց արժեք ունի: Առաջընթացին, վերակառուցմանը խանգարող ամեն ինչի անզիջում, բացահայտ գնահատումը սկզբունքային, լենինյան դիրքորոշում է, կուսակցության ուժի ցուցանիշ:

Նոր կյանքի հաստատման 70 տարիները վկայում են սոցիալիստական կարգերի կենսական հզոր ռեսուրսները: Սոցիալիզմը հասել է վիթխարի սոցիալական հաղթանակների, տնտեսական ու մշակութային ակնհայտ ձեռքբերումների, ոգեշնչող պատմական հեռանկարների: Այդուհանդերձ, կուսակցության ու ժողովրդի առջև խնդիր է դրված լիովին բացահայտել սոցիալիզմի բոլոր առավելություններն ու հնարավորությունները, նրա նյութական ու բարոյական արժեքները:

Ասելով ավելի շատ սոցիալիզմ, ենթադրվում է, որ մեզ հարկավոր է մշտապես նորացող, զարգացող սոցիալիզմ, որն ընդունակ է տնտեսական, մշակութային ու բարոյական առումներով լինելու մարդկային քաղաքակրթության ավանգարդում: Ավելի շատ սոցիալիզմ,— շեշտում է **Մ. Ս. Գորբաչովը**,— նշանակում է դինամիզմ և ստեղծագործություն, առավել կազմակերպվածություն ու կարգուկանոն, գիտականություն և նախաձեռնություն՝ տնտեսավարման մեջ, արդյունավետություն՝ կառավարման գործում: Ավելի շատ սոցիալիզմ՝ նշանակում է ավելի շատ սոցիալական արդարություն, աշխատանքի՝ սոցիալիստական հասարակության ամենաառաջնային արժեքի հեղինակության բարձրացում:

Ավելի շատ սոցիալիզմ, նշանակում է մեր համակեցության մեջ ավելի շատ դեմոկրատիզմ, հրապարակայնություն, կոլեկտիվիզմ, ավելի շատ կուլտուրա, մարդկայնություն մարդկանց փոխհարաբերություններում, անհատի ավելի մեծ արժանապատվություն և ինքնահարգում:

Ավելի շատ սոցիալիզմ, նշանակում է ավելի մեծ ձգտում դեպի հայրենասիրական վեհ նպատակները, ավելի շատ քաղաքացիական անհանգստություն երկրի գործերի համար և հոգածություն խաղաղության մասին: Մեր ընդհանուր պարտքը, սովետական մարդկանց բոլոր սերունդների պարտքն է Հայրենիքը XXI դար հասցնել որպես բարգավաճ, հզոր տերություն:

---



# ՖՈՏՈՍԻՆԹԵԶ. ԱԿՆՀԱՅՏՆ ՈՒ ԱՆՀԱՎԱՆԱԿԱՆԸ

ՎԱՂՈՒՑ ԱՆՑԵԼ ԵՆ այն ժամանակները, երբ մարդիկ կարծում էին, թե էներգիայի օգտագործվող աղբյուրները գործնականում անսահման ու անսպառ են: Արդեն տասը տարուց ավելի է, ինչ գիտնականները նախազգուշացնում են. բնական վառելիքի պաշարներն անհատնում չեն, և իզուր չէ, որ դրանք կոչվում են անվերականգնելի բնական ռեսուրսներ:

Եվ ահա գիտնականների առջև դրվել է կարևորագույն պրոբլեմ. գտնել էներգիայի առատ, անսահմանափակ և համեմատաբար էժան աղբյուրներ, որոնց օգտագործումը վնաս չհասցնի շրջակա միջավայրին, այսինքն՝ դրանք էկոլոգիական տեսակետից ընդունելի լինեն: Ընդհանուր առմամբ, աշխարհը պետք է դիտել ոչ թե որպես նախնիներից ստացած ժառանգություն, այլ որպես գալիք սերունդներից վերցրած փոխառություն:

Որոնումներն ընթանում են ամբողջ աշխարհում: Թեպետ մեր երկիրը բնական վառելիքի պաշարներով համարվում է աշխարհի ամենահարուստ տերություններից մեկը, այդուհանդերձ սովետական գիտնականները ևս ակտիվորեն միացել են այդ որոնումներին: ՍՍՀՄ երկարաժամկետ էներգետիկ ծրագրի հիմնական դրույթներով նախատեսվում է ստեղծել նյութատեխնիկական բազա՝ էներգիայի ոչ-ավանդական աղբյուրների լայն օգտագործման համար:

Դրանցից մեկի զարգացման հեռանկարներին է նվիրված ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի ֆոտոսինթեզի պրոբլեմների և բույսերի ֆոտոկենսաբանության գիտական խորհրդի գիտքարտուղար, կենսաբանական գիտությունների դոկտոր Ն. Վ. Կարապետյանի հետ լրագրող Լ. Մանասյանի զրույցը:

**Թղթ.**— Նատալյա Վահանովնա, հիշեցրեք, խնդրեմ, ֆոտոսինթեզի՝ որպես «հավերժական» պրոցեսի, հիմնական սկզբունքները:

**Ն. Կարապետյան.**— Վաղուց հայտնի է, որ Արևը էներգիայի առաջնային աղբյուրն է Երկրի բոլոր էակների համար: Նրա էներգիայի սկզբնային յուրացումը տեղի է ունենում եզակի պրոցեսի՝ ֆոտոսինթեզի ընթացքում: Այդպես է կոչվում բույսերի կողմից լույսի ազդեցության տակ օրգանական միացությունների ստեղծումը ջրից ու ածխաթթու գազից:

Բույսերը կանաչ են, որովհետև նրանց բաղադրության մեջ կա քլորոֆիլ կոչվող գունանյութը (պիգմենտ): Այն մտնում է վերերկրյա ու ջրային կանաչ բույսերի, այդ թվում նաև անզեն աչքով անտեսանելի կանաչ ջրիմուռների բաղադրության մեջ: Գոյություն ունեն նաև ֆոտոսինթեզող մանրէներ, որոնք ունեն իրենց գունանյութը, որը կոչվում է մանրէաքլորոֆիլ: Քլորոֆիլ պարունակող օրգանիզմները մեր մոլորակի միակ էակներն են, որոնք ընդունակ են յուրացնելու Արեգակի էներգիան:

Արեգակնային էներգիայի սկզբնային, քվանտային փոխակերպումը տեղի է ունենում ֆոտոսինթեզի, այսպես կոչված, ռեակցիոն կենտրոններում: Այդ ռեակցիային ընդունակ է քլորոֆիլի 300—400 մոլեկուլներից միայն մեկը: Քլորոֆիլի մնացած մոլեկուլները սոսկ կլանում են արեգակնային էներգիան և փոխանցում ռեակցիոն կենտրոններին: Սկզբնային լուսափոխակերպումն ունի առավելագույն արդյունավետություն և հասնում է 100 տոկոսի: Հետո, սկզբնային ֆոտոպրոցեսների ընթացքում, երբ տեղի է ունենում էլեկտրոնների անցումը ջրից պիրիդիննուկլեոտիդներին, արդյունավետությունն իջնում է մինչև 30 տոկոսի:

Հետագայում՝ ֆոտոսինթեզի կայուն արդյունքների կազմավորման մակարդակում, այն ընկնում է մինչև կլանված լուսային էներգիայի մեկ տոկոսի: Իսկ եթե ելնենք Երկրի մակերևույթի վրա ընկնող ամբողջ լուսային էներգիայից, ապա ֆոտոսինթեզի ժամանակ ամբարվում է դրա միայն 0,1 տոկոսը: Այնուամենայնիվ, ինչպես տեսնում ենք, այդ քանակությունն էլ բավական է պահպանելու համար կյանքի բոլոր ձևերը մեր մոլորակի վրա:

**Թ·ղթ.**— Արդի հասարակության կյանքն աներևակայելի է առանց էներգիայի անընդհատ աճող սպառման: Պատմեցեք, խնդրեմ, մարդկությանը էներգիայով ապահովելու գործում ֆոտոսինթեզի դերի մասին:

**Ն. Կարապետյան.**— Մեր օրերում էներգասպառման 95 տոկոսը կազմում են հանածո նյութերը՝ նավթը, բնական գազը, քարածուխը: Ատոմային էներգետիկային և հիդրոէլեկտրակայաններին, որքան էլ դա տարօրինակ հնչի, բաժին է ընկնում էներգաապահովման միայն 5 տոկոսը: Ըստ որոշ կանխագուշակումների, 2000 թվականին մարդկության համար պահանջվող էներգիայի մոտ 80 տոկոսը բավարարվելու է հանածո վառելիքի այրման հաշվին:

Իսկ ի՞նչ են իրենցից ներկայացնում նավթը, քարածուխը, գազը: Դրանք ֆոտոսինթեզի արդյունքներ են՝ հնադարյան օրգանիզմների կուտակած արեգակնային էներգիան: Մենք չենք էլ պատկերացնում, թե ինչպիսի կայուն տեղ են գրավում ժամանակակից կյանքում էներգիայի հանածո աղբյուրները, որքանով են մեր կյանքի բոլոր կողմերը օրգանապես դրանցով ներթափանցված: Այդ հանածո վառելանյութերը մեր մոլորակի վրա միլիոնավոր տարիներ առաջ աճած բույսերի մնացորդներն են: Քարածուխ ու նավթ են դարձել մինչսառցային շրջանում գոյություն ունեցած հսկայական պտերազգի ծառերը, ժամանակին համաշխարհային օվկիանոսում բնակվող ջրիմուռները ու մանրէները: Ֆոտոսինթեզի արդյունքների որևէ նյութի վերածվելը կախված էր այն երկրաբանական կառուցվածքից, որտեղ դրանք պահպանվում էին:

Մինչև մարդու եռանդուն շահագործման օբյեկտ դառնալը՝ հանածո վառելանյութը հազարամյակների ընթացքում կուտակվում էր Երկրի ընդերքում: Իսկ ահա դրա սպառման տեմպերը ապշեցուցիչ են: Եթե, օրինակ, նավթի պաշարների ստեղծման համար պահանջվեց մոտ 5 միլիոն տարի, ապա նրա ինտենսիվ հանույթից անցել է հարյուր տարուց քիչ ավելի և արդեն սկսել են խոսել այդ պաշարների մոտալուտ սպառման մասին:

**Թ·ղթ.**— Ընդ որում բնորոշ է, որ այդ հանածոները գլխավորապես օգտագործվել և օգտագործվում են ամենապարզ ու ամենահեշտ ճանապարհով՝ որպես սովորական վառելանյութ: Չէ՞ որ դեռևս Մենդելեևն է ասել, որ «վառարանում նավթ վառելը նույնն է, ինչ թղթադրամներ վառելը», իսկ Ցիոլկովսկին այն կարծիքն է հայտնել, թե մարդու տգիտությունն է, որ ստիպում է նրան օգտագործել հանածո վառելանյութը...

**Ն. Կարապետյան.**— Եվ, չնայած դրան, այսօր էլ գործնականում բոլոր էներգետիկ պահանջմունքները բավարարվում են գլխավորապես ֆոտոսինթեզի այդ հանածո արդյունքների «պարզ» այրման միջոցով: Ընդ որում էական տարբերություններ կան զարգացած և զարգացող երկրների էներգետիկ հաշվեկշռի կառուցվածքում: Եթե զարգացած երկրները օգտագործում են հիմնականում նավթ (45 տոկոս), քարածուխ (28 տոկոս) և գազ (23 տոկոս), ապա զարգացող երկրներում նավթի օգտագործման բաժինը կազմում է ընդամենը 24 տոկոս, քարածխինը՝ 26, իսկ գազինը՝ 4 տոկոս:

**Թ·ղթ.**— Երկրների ոչ առաջին և ոչ էլ երկրորդ խմբերում Ձեր բերած թվերը չեն կազմում 100 տոկոս...

**Ն. Կարապետյան.**— Այդ էներգետիկական դեֆիցիտը (1 տոկոս զարգացած երկրներում և մոտ 45 տոկոս զարգացող երկրներում) ծածկվում է կենսազանգվածի՝ փայտանյութի, գյուղատնտեսական բույսերի թափոնների և օրգանական քիմիայի այլ տեսակների օգտագործման հաշվին:

Արեգակնային էներգիան ապագայի համար խիստ հեռանկարային ու հրապուրիչ էներգիայի աղբյուր է: Բայց այն ունի իր թերությունները, որոնցից գլխավորը, հավանաբար, այն է, որ մեր լուսատուի էներգիան ցրված է և հավասարապես չի հասնում մեզ՝ կախված տարվա եղանակից ու օրվա ժամից: Այսպիսով, այդ էներգիայի հավաքման ու կուտակման հետ կապված ծախսերը դեռևս բավական բարձր են: Մինչ մարդը դեռ փորձեր է անում տիրելու ցրված արեգակնային ռադիացիային, բնությունը վաղուց սովորել է դա անել կանաչ գունանյութերի օգնությամբ:

Այդ առումով ֆոտոսինթեզող բույսերը ամենահզոր մարտկոցն են երկրագնդի վրա, որոնք հավաքում ու ամբարում են Արեգակի էներգիան: Համեմատության համար ասեմ նաև, որ եթե, ըստ որոշ հաշվարկների, բույսերի ընդհանուր կենսազանգվածը կազմում է մոտ 800 մլրդ տոննա, ապա երկրի ընդերքում գտնվող ֆոտոսինթեզի արդյունքների՝ հանածո վառելիքի, քանակը հասնում է մոտ 900 մլրդ տոննայի: Բերված թվերը ակնհայտորեն բացահայտում են կենսազանգվածի էներգիայի օգտագործման անսահման հեռանկարները: Ընդ որում նույնքան անսահման են կենսազանգվածի արտադրությունն ավելացնելու մեր հնարավորությունները:

Կենսահամակարգերը «գործում են» այնպիսի անսահմանափակ բնական ռեսուրսներով, ինչպիսիք են արեգակնային ճառագայթումը, ածխաթթու գազը և ջուրը: Բացի այդ, բույսերն իրենցից ներկայացնում են էներգիայի անընդհատ վերականգնվող աղբյուրներ, քանի որ որպես սնունդ կամ վառելիք օգտագործված դրանց կենսազանգվածը վաղ թե ուշ կրկին վերածվում է սկզբնական նյութերի՝ ջրի ու ածխաթթու գազի: Բույսերի երրորդ կարևորագույն առավելությունն այն է, որ որպես վառելիք օգտագործելիս դրանք գրեթե չեն աղտոտում շրջակա միջավայրը վնասակար թափոններով:

**Թ·ղթ.**— Բայց մարդը վաղուց ի վեր օգտագործել է փայտանյութը, գոմաղբը, գյուղատնտեսական թափոնները և կենսազանգվածի այլ տեսակներ: Եվ այն փաստը, որ մարդկանց ճնշող մեծամասնությունն այսօր իրենց տները չի տաքացնում վառելափայտով, հավանաբար վկայում է վառելիքի այդ տեսակին բնորոշ թերությունների մասին, այդպես չէ՞:

**Ն. Կարապետյան.**— Փայտանյութի օգտագործումը որպես վառելիք նվազեցվել է նախ այն պատճառով, որ այն աչքի է ընկնում ցածր կալորիականությամբ: Համեմատեք. եթե 1 գրամ նավթի այրման էներգետիկ արժեքը, այսինքն այրման ջերմությունը, կազմում է 10 կալորիա, քարածխինը՝ 6—7, ապա չոր փայտանյութի մեկ գրամը տալիս է ընդամենը 3—5 կալորիա: Հենց այս, ինչպես նաև փայտանյութի պաշարները խիստ սահմանափակ լինելու պատճառով, դեռևս անցյալ դարում նախ քարածուխը, ապա նավթը և բնական գազը աստիճանաբար դուրս մղեցին այդ կենսազանգվածը մարդկության էներգետիկ «տեսականուց»:

Այսօր առաջարկվում են այդ թերության վերացման բազմազան ուղիներ: Օրինակ, փայտանյութը կարելի է մանրացնել և մամլել աղյուսների ձևով, որը թույլ կտա բարձրացնել էներգիայի պարունակությունը քաշի միավորում և հասցնել քարածխին: Սակայն այդ ուղին, ինչպես կարելի է նկատել, կրկին հիմնված է ցելյուլոզի՝ կենսազանգվածի հիմնական վառելիքային բաղկացուցչի, ուղղակի այրման վրա:

Գիտնականներն այսօր առաջարկում են կենսազանգվածի օգտագործման առավել արդյունավետ միջոցներ: Մենք գիտենք, որ կենսազանգվածը պետք է վերամշակել վառելիքի այլ տեսակների: Այն կարող է լինել պինդ, ինչպես, օրինակ, փայտածուխը, կարող է լինել հեղուկ. դա փայտանյութից ստացված մեթանոլն ու էթանոլն են: Եվ, վերջապես, կենսազանգվածից կարելի է ստանալ գազանման վառելիք՝ ջրածին և մեթան: Փայտանյութի վերամշակված բոլոր այդ տեսակների այրման ջերմությունը զգալիորեն ավելի բարձր է, քան ելակետային նյութինը: Այդ գերազանցումը չվերամշակված փայտանյութի նկատմամբ երբեմն հասնում է 1,5—4 անգամի: Վերամշակված փայտանյութի որոշ տեսակներ, քաշի միավորին բաժին ընկնող էներգիայի քանակով, գերազանցում են անգամ նավթին:

Գիտության այսօրվա ձեռք բերած մակարդակը հնարավորություն է տալիս փոխելու ֆոտոսինթետիկ նյութափոխանակության ուղին դեպի անհրաժեշտ արդյունքների նպատակային սինթեզը: Մեր օրերում առանձնահատուկ հետաքրքրություն է հարուցում ջրածնի ֆոտոանջատումն ու ազոտի ֆոտոյուրացումը բույսերի կողմից:

**Թ·ղթ.**— Ներեցեք, ես ընդհատեմ Ձեզ: Հիշո՞ւմ եք Ժյուլ Վեռնի «Խորհրդավոր կղզին». «Ես համոզված եմ, որ մի գեղեցիկ օր ջուրը կօգտագործվի որպես վառելիք, որ ջրածինն ու թթվածինը, որոնցից այն բաղկացած է, միասին կամ առանձին-առանձին կդառնան լույսի ու ջերմության անսպառ աղբյուրներ»— գրել է նա դեռևս 1874 թվականին:

**Ն. Կարապետյան.**— Ժյուլ Վեռնի ինչպես բազմաթիվ այլ, այնպես էլ այս կան-

խագուշակումը կարող է իրականանալ: Եթե ջրածինն ավելի հեշտությամբ ստացվեր, ապա այն կարող էր դառնալ էներգիայի հիմնական և գործնականում անսպառ աղբյուր: Օգտագործելով այն վառելիքային մարտկոցներում՝ հնարավոր կլիներ էլեկտրականություն ստանալ: Հեղուկ ջրածնի պոտենցիալ էներգիան 2,5 անգամ ավելի է, քան բենզինինը: Իսկ որքա՞ն մեծ է այդ վառելանյութի էկոլոգիական առավելությունը, որի այրման արդյունքը ոչ թե թունավոր գազեր են կամ ուրիշ վնասակար միացություններ, այլ... սովորական ջուրը:

Կանաչ բույսերի բնական ֆոտոսինթեզի ժամանակ անջատվում է թթվածին: Դրա հետ մեկտեղ, որոշ ջրիմուռներ ու մանրէներ անաերոբ, այսինքն թթվածնի բացակայության պայմաններում, ընդունակ են անջատելու ջրածին՝ բայց ոչ անմիջապես ջրից: Հայտնի է, որ ջրիմուռների ու մանրէների կողմից ջրածնի անջատումը տեղի է ունենում հիդրոգենազի ֆերմենտի մասնակցությամբ, որը չի պարունակվում կանաչ բույսերի բջջի բաղադրության մեջ: Սակայն եթե բարձրագույն բույսերից առանձնացված քլորոպլաստներին ավելացնենք մանրէներից անջատված հիդրոգենազ և քլորոպլաստները լուսավորենք թթվածնի բացակայության պայմաններում, ապա դրանք կանջատեն ջրածին:

Ֆոտոսինթեզի մոլեկուլյար մեխանիզմների ճանաչումը հնարավորություն կտա մշակելու «արհեստական» լուսահամակարգ, որը կվերարտադրի բույսերի և ջրիմուռների ֆոտոսինթետիկ ռեակցիաները: Ընդ որում այդ համակարգը զերծ է բնական ֆոտոսինթեզի ֆիզիոլոգիական և ագրոնոմիական սահմանափակումներից: Նման հետազոտություններ կատարվում են ՍՍՀՄ ԳԱ մի շարք գիտական կենտրոններում (Ա. Ն. Բախի անվան կենսաքիմիայի ինստիտուտում, քիմիական ֆիզիկայի ինստիտուտում) և Մոսկվայի համալսարանում:

Իսկ ինչպե՞ս են գործերը լույսի էներգիայի կուտակման բնագավառում: Այդ նպատակի համար որպես որսիչներ են օգտագործվում տարբեր գունանյութեր, առանձնացված կառուցվածքներ և ֆերմենտներ: ՍՍՀՄ ԳԱ Ա. Ն. Բախի անվան կենսաքիմիայի ինստիտուտում վերջին քառասուն տարիների ընթացքում հետազոտվում են լուսային էներգիայի փոխակերպման սկզբունքները և լույսի էներգիան կուտակելու ունակ մոդելները: Առաջարկվել են մոդելային ֆոտոկենսաքիմիական համակարգեր, որտեղ կիրառվում են քլորոֆիլ և այլ միացություններ պարունակող լիպոսոմներ: Այդպիսի լիպոսոմների օգնությամբ, մանրէական հիդրոգենազի առկայության պայմաններում, մոդելավորվել է ջրածնի ֆոտոփոխակերպումը:

Ֆոտոսինթեզի ժամանակ ընթացող ֆոտոքիմիական պրոցեսներն այսօր հաջողվում է մոդելավորել նաև անօրգանական կիսահաղորդիչների օգնությամբ, որոնք կատարում են ինչպես լուսազգայագրգռիչի, այնպես էլ կատալիզատորի դեր, որոնց մակերևույթի վրա տեղի են ունենում ֆոտոպրոցեսները: Այդ կիսահաղորդիչները հնարավորություն տվեցին մոդելավորելու թթվածնի ֆոտոանջատումը: Իսկ երբ թթվածնի բացակայության պայմաններում համակարգ է մտցվում մանրէական հիդրոգենազ, դիտվում է ջրածնի ֆոտոկազմավորում: Պետք է ավելացնել, որ որոշակի պայմաններում, երբ համակարգն ընդունակ է արտադրելու ուժեղ վերականգնման պոտենցիալ, ջրածնի ֆոտոանջատումը հնարավոր է անգամ հիդրոգենազի բացակայության դեպքում: Մոդելային համակարգերում ընթացող լուսապրոցեսներն առայժմ բավարար չափով արդյունավետ չեն: Խիստ հրապուրիչ հեռանկարներ ունի արդյունավետ արհեստական ֆոտոթաղանթների ստեղծումը, որոնք ունակ կլինեն վառելիքի արտադրության համար վերականգնվող նյութեր արտադրել: Ուզում եմ մեկ անգամ էլ կրկնել՝ սովետական գիտնականների ձեռք բերած հաջողությունները հիմք են տալիս ենթադրելու, որ գործնական օգտագործման համար ջրածնի և թթվածնի ստացման արդյունավետ ու էժան եղանակների ստեղծումը յոթը սարի հետևում չէ:

**Թղթ.**— Ձեր ասածն արդյո՞ք նշանակում է, որ ֆոտոսինթեզի օգնությամբ վառելիքի ստացումը, այնուամենայնիվ, ապագայի գործ է: Թե՞ մարդկությունն արդեն այսօր օգտագործում է կենսազանգվածի վերամշակման այլ եղանակներով ստացված վառելիք:

**Ն. Կարապետյան.**— Անշուշտ, մենք արդեն օգտվում ենք կենսազանգվածից ստացված որոշ նյութերից: Խոսքն, առաջին հերթին, էթանոլի մասին է, որի հետ առանձնահատուկ հույսեր են կապվում:

Կան բույսեր, որոնք կուտակում են մեծ



քանակությամբ ածխաջրեր, այսինքն՝ շաքար: Ածխաջրերի ամենաարդյունավետ արտադրողներից է շաքարեղեգը: Որոշ երկրներում, օրինակ, Բրազիլիայում, շաքարից ստանում են էթանոլ, որը որպես վառելիք ավելացվում է բենզինին: Դեռևս երկրորդ համաշխարհային պատերազմից առաջ եվրոպական մի քանի երկրներում ավտոմեքենաներն աշխատում էին էթանոլի, մեթանոլի և բենզինի այդպիսի խառնուրդով: Ե՛վ այն ժամանակ, և՛ այժմ էթանոլը հիմնականում ստանում են խմորիչների ներգործությամբ ածխաջրերի խմորման հետևանքով: Այս եղանակը հեռանկարային է միայն շաքար արտադրող երկրների համար: Շաքարեղեգի վերամշակումից հետո մնում է մածուցիկ զանգված՝ կերամաթ, որի 60 տոկոսը կազմված է բուսաշաքարից և այլ շաքարաշատ նյութերից: Կերամաթի խմորումից ստացվում է էթանոլ:

Էթանոլ կարելի է ստանալ նաև քիմիական ճանապարհով՝ ցելյուլոզը գլյուկոզայի վերածելու և վերջինս խմորելու միջոցով: Այս «էկզոտիկ» եղանակը կիրառվում է, օրինակ, Ավստրալիայում, որտեղ ցելյուլոզի աղբյուր է ծառայում էվկալիպտի փայտանյութը: Այդ բույսը, ինչպես և մյուս արագ աճող ծառերը, օրինակ, ակացիայի որոշ տեսակներ, շատ արդյունավետ կերպով կուտակում են արեգակնային ճառագայթման էներգիան: Այդ ծառերը 3—4 տարվա ընթացքում այնպիսի չափերի են հասնում, որ դրանք կարելի է կտրել ու օգտագործել որպես վառելիք: Հատելուց հետո դրանց տեղում տնկվում են նոր ծառեր:

**Թղթ.**— Եթե վառելիքը կարելի է ստանալ ամբողջ ծառի կենսազանգվածից, ապա, հավանաբար, ոչինչ չի խանգարում նաև թափոնների, այսպես կոչված՝ երկրորդական հումքի օգտագործմանը, այնպես չէ՞:

**Ն. Կարապետյան.**— Այստեղ պետք է վերապահում անել. «կենսազանգված» հասկացությունը մեկնաբանվում է ավելի լայն առումով, քան մենք օգտագործել ենք մինչև այժմ: Կենսազանգված են համարվում ոչ միայն բույսերը, այլև դրանցից ստացվող երկրորդական հումքը, մասնավորապես, արդյունաբերական ու կենցաղային թափոնների որոշ տեսակներ: Այսպես, էներգիայի կարևոր աղբյուր կարող են ծառայել փայտամշակման և ցելյուլոզի, թղթի արդյունաբերության թափոնները: Էներգիայով պակաս հարուստ չեն այնպիսի օրգանական թափոնները, ինչպիսիք են բավական շատ ցելյուլոզ պարունակող կենցաղային աղբ-թուղթը, բուսական սննդի մնացորդները, անասնապահության թափոնները: Դրանցից կարելի է ստանալ կենսագազ (բիոգազ): Սրա հիմնական բաղկացուցիչը՝ մեթանը. օգտագործվում է որպես վառելանյութ, իսկ մնացորդը, որ պարունակում է ազոտային սնուցանյութեր, կարող է օգտագործվել որպես պարարտանյութ: Հարկ է ավելացնել, որ կենսագազի արտադրության նկատմամբ հետաքրքրություն են դրսևորում հիմնականում զարգացող երկրները. այդ վառելանյութի ստացման կայանքները նախատեսվում է օգտագործել գլխավորապես փոքր բնակավայրում, որոնք հեռու են էներգամատակարարման մայրուղիներից:

**Թղթ.**— Հայաստանը հաճախ կոչում են «արևոտ» հանրապետություն: Ինչպե՞ս եք Դուք գնահատում այդ բնական «հարստության» օգտագործման հեռանկարները մեր հանրապետությունում:

**Ն. Կարապետյան.**— Արեգակնային էներգիայի փոխակերպման հետազոտությունները Հայաստանում ընթանում են երեք ուղղություններով: Առաջինը կիսահաղորդչային ֆոտոէլեկտրոդների օգնությամբ արեգակնային էներգիայի ֆոտոէլեկտրական փոխակերպման բնագավառում տարվող աշխատանքներն են: Ներկայումս գոյություն ունեցող կիսահաղորդչային էլեկտրոդների արդյունավետությունը հասնում է բավական բարձր մեծության՝ 28 տոկոսի, սակայն դրանք չափազանց թանկ են: Հետևաբար, շատ գիտնականների, այդ թվում նաև Երևանի համալսարանի գիտնականների աշխատանքները նվիրված են արդյունավետ, բայց էժան կիսահաղորդչային համակարգերի որոնումներին:

Հաջորդ ուղղությունը հայելիների համակարգի օգնությամբ արեգակնային ճառագայթման կենտրոնացմանն ուղղված աշխատանքներն են: Կենտրոնացված արեգակնային լույսը (մինչև 1000 «արև») ուղղվում է կիսահաղորդչային ֆոտոէլեկտրոդի վրա, որ շատ ավելի էժան է, քան այնպիսի համակարգերը, երբ մեծ մակերևույթները ծածկվում են արեգակնային էներգիան հավաքելու ու փոխակերպելու համար նախատեսված թանկարժեք էլեկտրոդներով: Բացի այդ,

կենտրոնացված արեգակնային լույսը կարելի է օգտագործել նաև ջերմաքիմիական ռեակցիաների անցկացման համար:

Վերջապես, պետք է նշել այն աշխատանքները, որոնք տարվում են ՀՍՍՀ ԳԱ մանրէակենսաբանության ինստիտուտում անասնապահության թափոններից կենսագազի ստացման տեխնոլոգիայի մշակման ուղղությամբ, ինչպես նաև գործնական կարևորություն ունեցող ջրիմուռների աճեցմանը նվիրված աշխատանքները: Այնպիսի ջրիմուռները, ինչպես սպիրուլինան, պարունակում են շատ սպիտակուցներ ու վիտամիններ, թունավոր չեն և կարող են օգտագործվել որպես լրացուցիչ պարարտանյութ: Ինստիտուտում արդեն կան այդ ջրիմուռի մեծ քանակությունների անընդհատ ստացման կայանքներ: Հաջորդ փուլը արդյունաբերական կայանքների կարգավորումն է: Դունալիելլայի ջրիմուռները կարող են կուտակել մեծ քանակությամբ գլիցերին: Տեղական հումքի հիման վրա այդ ջրիմուռի աճեցման պայմանների ստեղծումը հնարավորություն կտա ստանալու զգալի քանակությամբ համեմատաբար էժան գլիցերին:

Հանրապետության գիտնականների աշխատանքները ճանաչում են գտել ամբողջ երկրում: Այդ մասին խոսվեց Երևանում անցկացված «Էներգիայի վերականգնելի աղբյուրները» համամիութենական կոնֆերանսում, ուր զեկուցումների մի մասը նվիրված էր արեգակնային էներգիայի ֆոտոսինթետիկ փոխակերպման պրոբլեմներին: Հայաստանի մայրաքաղաքում նման ներկայացուցչական համաժողովի անցկացման փաստն արդեն վկայում է հայ գիտնականների ծառայությունների ճանաչման և նրանց աշխատանքների հեռանկարայնության մասին:

Հանձնված է շարվածքի՝ 16. 06. 87 թ.: Ստորագրված է տպագրության 16. 07. 87 թ.: ՎՖ 02504:
Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրությունը՝ բարձր,, 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.:
Տպաքանակը՝ 18032: Պատվեր 1380:

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2: